ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ «ԲԱՆԱՍԷՐ»Ի



Բ. ԽԱԼԱԹԵԱՆՑ

# ԻՐԱՆԻ ՀԵՐՈՍՆԵՐԸ
## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԷՋ



ա. ԱՌԱՋԱԲԱՆ

բ. ՆԻՒԹ

ՎԱՆԱՅ, ԿՈՂԹԱՅ ԵՒ ԱՊԱՐԱՆԻ ԲԱՐԲԱՌՆԵՐՈՎ



ՓԱՐԻՍ

Տպագրութիւն «Բանասէր»ի

1901

# ԻՐԱՆԻ ՀԵՐՈՍՆԵՐԸ

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԷՋ

## ԱՌԱՋԱԲԱՆ

### Ա. ՀԱՅ ԵՒ ՊԱՐՍԻՑ ՀԵՐՈՍՆԵՐԸ

*Ամէն մի ազգ, դեռ իւր կեանքի օրօրոցում սիրում է զարդարել իւր հնագոյն անցեալն որպէս առասպելներով, քաջարի նախնեաց փայլուն հռչակով, նոյն՝ իսկ սերել իրան որ եւ է դիւցազնից։ Այս թանկագին յիշատակարանն ժողովուրդը պահպանում է ամենայն սրբութեամբ եւ կտակում նորատի սերնդին։ Հին Յոյներին հաճոյ էր խմբել ծեր «աշուղի» շուրջն եւ ականջ դնել Տրովադայի պաշարման, հերոսաց հուժկու հարուածների, չաստուածոց խնջոյքների, կամ Հերակլէսի, Թեսէոսի եւ այլ դիւցազանց արկածների «նաղլներին»։ Ըստ Խորենացու, Հայկի մասին «անգիր հին ասացեալ զրոյցներ» էին պտտում ժողովրդի մէջ (1)։ Գերմանացոց «Նիբելունգների մասին երգը» ամբողջապէս կենդանացնում է այս ազգի հնագոյն աշխարհայեցողութիւնը։ Ռուսաց* «byliny» *(եղելիք) կոչուած վիպական աւանդութիւնները ներկայացնում են զարմանալի հարուստ պաշար ժողովրդի դիւցազնական անցեալի։ Թերեւս մի կողմ թողած արեւելեան առասպելների գանձարանն, որ ցիր-ցան տարածուել է զանազան երկրներ։*

*Ժամանակի ազդեցութիւնը մի կողմից, քաղաքակրթութեան՝ միւս հետզհետէ թուլացնում են այս յիշողութիւնը ժողովրդի մէջ, իսկ ազգերի փոխադարձ յարաբերութիւններն առաջ են բերում եւ մտաւոր չփոթմըն, հետեւապէս եւ ընտանի աւանդութեանց աղաւաղումն շնորհիւ օտարազգեայ զրոյցների։ Սկզբնական սերմն աւելի խորն է թաղւում նոր եւ նոր շերտերի տակ։*

*Պատմական անցքերն ոչ պակաս փոփոխութիւններ են մուծանում աւանդութեանց բովանդակութեան մէջ։ Հին հերոսը շատ անգամ տեղի է տալիս նորագունին, նորան կտակում իւր բնաւորութիւնը, յատկու-*

---

*(1) Գիրք Ա. Գլ. Ժ։ Տես նմանապէս Վահագնի մասին Գիրք Ա. Գլ. ԼԱ։*

# ԻՐԱՆԻ ՀԵՐՈՍՆԵՐԸ

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԷՋ

## ԱՌԱՋԱԲԱՆ

### Ա. ՀԱՅ ԵՒ ՊԱՐՍԻՑ ՀԵՐՈՍՆԵՐԸ

*Ամէն մի ազգ, դեռ իւր կեանքի օրօրոցում սիրում է զարդարել իւր հնագոյն անցեալը որպէս առասպելներով, քաջարի նախնեաց փայլուն հռչակով, նոյնիսկ սերել իրան որ եւ է դիւցազնից: Այս թանկագին յիշատակարանն ժողովուրդը պահպանում է ամենայն սրբութեամբ եւ կտակում նորատի սերնդին: Հին Յոյներին հաճոյ էր խմբել ծեր «աշուղի» շուրջն եւ ականջ դնել Տրովադայի պաշարման, հերոսաց հուժկու հարուածների, չաստուածոց խնջոյքների, կամ Հերակլէսի, Թեսէոսի եւ այլ դիւցազանց արկածների «նաղլներին»: Ըստ Խորենացու, Հայկի մասին «անգիր հին առացեալ գրոյցներ» էին պատում ժողովրդի մէջ (1). Գերմանացոց «Նիբելունգների մասին երգը» ամբողջապէս կենդանացնում է այս ազգի հնագոյն աշխարհայեցողութիւնը. Ռուսաց «byliny» (եղելիք) կոչուած վիպական աւանդութիւնները ներկայացնում են զարմանալի հարուստ պաշար ժողովրդի դիւցազնական անցեալի. Թերեւս մի կողմ թողած արեւելեան առասպելների գանձարանն, որ ցիր-ցան տարածուել է զանազան երկրներ:*

*Ժամանակի ազդեցութիւնը մի կողմից, քաղաքակրթութեան՝ միւս հետզհետէ թուլացնում են այս յիշողութիւնը ժողովրդի մէջ, իսկ ազգերի փոխադարձ յարաբերութիւններն առաջ են բերում եւ մտաւոր շփումըն, հետեւապէս եւ ընտանի աւանդութեանց աղաւաղումն շնորհիւ օտարազգեայ գրոյցների: Սկզբնական սերմն աւելի խորն է թաղւում նոր եւ նոր շերտերի տակ:*

*Պատմական անցքերն ոչ պակաս փոփոխութիւններ են մուծանում աւանդութեանց բովանդակութեան մէջ. հին հերոսը շատ անգամ անզգալի է տալիս նորագունին, նորան կտակում իւր բնաւորութիւնը, յատկու-*

(1) *Գիրք Ա. Գլ. Ժ: Տես նմանապէս Վահագնի մասին Գիրք Ա. Գլ. ԼԱ:*

թիւնները, զէնքերը. ժողովուրդը ինքն, այլեւս չ'գոհանալով իւր հին դիւցազնից, որից բաժանուած է երկար դարերով, իւր բոլոր բանաստեղծական հանճարը թափում է նոր հերոսի վերայ, որ հաչակւում է նորա օրերով կամ մօտիկ անցեալում։ Նորա երեւակայութիւնը կրկին թեւ է առնում եւ կրկին ստեղծագործում։

Այսպէս են կազմւում պատմական երգերն, որոնք խմբւում են յայտնի ազգային գործիչների շուրջն եւ պատում նոցա անունը առասպելական լուսով։ Ռուսաց ժողովուրդն այստեղ եւս կարող է ամենալաւ օրինակ ծառայել, թէ ինչպէս պատմական անցքերն ազդու արձագանք են գտնում ստոր խաւերի մէջ (1)։

Ամէն մի աւանդութիւն, որչափ էլ հին լինի, իւր հեքեաթանձեւ քողի տակ թագցնում է սկզբնական սերմն, որ շարժել է ժողովրդի երեւակայութիւնը, գործունէութեան հրաւիրել նորա հոգեւոր ոյժերը։ Ճշմարիտ է, դարերի ընթացքում, ենթարկւելով նորանոր փոփոխումների եւ կողմնակի ազդեցութիւնների, նա աւելի եւ աւելի օտարանում է ժողովրդին. բայց այնուամենայնիւ «ասողը» մինչեւ այժմս էլ խիստ տարբերութիւն է դնում «հեքեաթ»ի եւ «զրոյց»ի (նաղլի, մասալի) մէջ, վերջինիս ընծայելով լիովին հաւատ եւ պատմելով նորան իբրեւ եղելութիւն. ռուսաց առածը շատ պարզ արտայայտում է ժողովրդի այս տեսակէտը՝ «skazka — skladka, a pêsnja — byl» (հեքեաթը չինծու է, իսկ երգն՝ եղելութիւն)։

Չկայ ազգ, որ չունենայ իւր վէպն, իւր զրոյցն. այս աւանդութեանց մէջ է նա գտնում իւր հոգեւոր բաւականութիւնն, նոցա մէջ պտրում իւր պապերի պատմութիւնն. փոյթ չէ, եթէ նորա հերոսները հեռու են նորանից ամբողջ դարերով, անբնական իրանց յատկութիւններով, անհամապատասխան ներկայիս. «էն վախտը (ժամանակը) փահլեւանների վախտ էր» ասում է խորին համոզմունքով ժողովուրդը. նոյն իսկ մեր ժամանակակից ըմբիշները (փահլեւանները) հետաքրքիր ապացոյց են, որ նա դեռ բոլորովին չէ խզել իւր կապը հնոց քաջերի հետ։

Թէ Հայերն եւս հնումն ունեցել են իրանց սեպհական դիւցազնական վէպերն՝ այդ մեզ ակներեւ է թէ Խորենացու բազմաթիւ, թէպէտ եւ հատուկտոր, ցիրցան մնացորդներից (2) եւ թէ ներկայումս մեր

---

(1) Istoritscheskija pêsni ob Ivanê, Grosnom, Ermakê, Skopinê Schujskom (Gilferding, Rybnikoff, Kireevskij).

(2) Ա. Գրքի ԼԱ. Գլխում Խորենացին յիշում է «Թուելեաց երգերի» մասին, առաջ բերելով միայն մի քանի անկապ տողեր, որոնք իբր երգերի բովանդակութիւնն են յիշեցնում։ Բայց եւ այս անկապ հատուածներն արդէն ապացոյց են, որ դեռ Խորենացու ժամանակ Հայերը «ախորժելով» պահպանել էին իրանց դիւցազնական երգերն, որոնք կեդրոնացած էին «գինաւէտ» Գողթն գաւառում։ Նկատի եւս Վահագնի, Արտաշիսի (Գիրք Բ. Գլ. Ծ, ԿԱ) մասին երգերը։ Համեմատիր եւս Փաւստոս «(Հայք) զիւրեանց երգս առասպելեաց վիպասանութեան սիրեցեալք...» (Դպր. Գ. Գլ. ԾԳ.)։

*մէջ պտտող երգերից եւ զրոյցներից, որոնք ամենից լաւ պատկերացնում են մեր ժողովրդի բանաստեղծական ոգին, որ դեռ շարունակում է ծաղկել եւ պտուղներ տալ։ Զանց առնել մի որ եւ է ազգի մտաւոր կեանքի ընդունակութիւնը՝ նշանակում է վայրենութեան ստոր աստիճանին հասցնել նորան։*

*Այլ խնդիր է, թէ ո՞ր չափով Հայերը փոխ են առել օտարազնեայ զրոյցներ։ Այս բանաւոր պաշարն այն աստիճան ճոխ է, որ պահանջում է նիւթի որոշ դասաւորութիւն, ըստ տեսակի եւ նշանակութեան, եւ լուրջ համեմատական ուսումնասիրութիւն։ Սակայն ես կընտրեմ այս աւանդութիւններից մի որոշ խումբ, որ անմիջապէս հետաքրքրութիւն է ներկայացնում թէ իւր ընդհանուր ճաշակով եւ թէ մեր վէպերի վերայ ունեցած ազդեցութեամբ։*

*Խօսքս Իրանի դիւցազնական աւանդութեանց մասին է։*

*Բաւական է մի թեթեւ հայեացք նետել հին Հայաստանի աշխարհագրական քարտիզի վերայ, որպէսզի տեսնել նորա քաղաքական անբարեպատեհ դրութիւնն երկու հզօր պետութեանց մէջ. թէ արեւմաքից եւ թէ մանաւանդ արեւելքից նորա գլխին են իջել ամենածանր հարուածներ. այստեղ միմեանց էին հանդիպում երկու մեծ ոսոխների շահերն. այստեղ նոցա յաջողում էր միշտ վառ պահել նախարարների ապստամբ ոգին եւ փոխադարձ ատելութիւնն. այս դժբաղդ երկիրն շարունակ մուտք էին գործում կայսեր լէգէոններն կամ կրակապաշտ դըբացիների անթիւ վաշտերն։ Այս հանգամանքն մեծ արգելք էր Հայաստանի քաղաքական աճման եւ հաստատութեան, որ ի վերջոյ տարաւ նորան ի կորուստ։*

*Բայց Յունաց եւ Պարսից ազդեցութիւնն միայն քաղաքական չէր, նա աւելի խորն էր դնում, տարածւում հայ ազգի նոյն իսկ մտաւոր եւ հոգեւոր կեանքի վերայ, որ ժամանակի ընթացքում տւեց իւր պտուղներն։*

*Մինչդեռ արեւմտքից Հայերի վերայ ծագեց քրիստոնէութեան լոյսն եւ ապա Յունաց դպրոցները բաց արին հայ մանկանց առաջեւ մտքի լայն ասպարէզ, սնեցին եւ հանդէս բերին մի շարք քանքարաւոր մշակներ, Պարսից դարեւոր հարեւանութիւնն աւելի եւս խոր դրոշմեց հայ ազգի կեանքի վերայ. նա զգալի է նախ լեզուում, թէ՛ գրաբառում, եւ թէ՛ առաւել եւս աշխարհաբառում, որ այժմս կարծես արդէն ընտանեցած է մեզանում։ Միւս կողմից Արեւելքն՝ Պարսից շնորհիւ՝ բաց էր անում Հայերի առջեւ իւր խորհրդաւոր պարտիզի դռներն եւ նորա հրաւիրում հեքեաթների աշխարհն, ուր մարդկային երեւակայութիւնն այնպէս հրաշալի կերպով ծաղկեց արեւելեան ճոխ բնութեան գրկում։ Իրանի հռչակաւոր հերոսների աւանդութիւններն, որ ոչ միայն ժողովրդի լսելիքն էին շոյում, այլ ազատօրէն մուտք գործում նոյն իսկ «շահանց շահերի» արքունիքը, հեշտիւ կարող էին հրապուրել Հայե-*

րի՝ Պարսից ամենամօտ դրացիների երեւակայութիւնն ։ Դա բնաւ զարմանալի չէ ։ Ամեն մի ազգ իւր մանկութեանում պաշտում է այն, ինչ որ բնականից դուրս է, մարդկային կարողութիւնից ի վեր․ նա սիրով հաւատում է իւր դիւցազների յաղթութիւններին, դեւերի, հրէշների, ամբողջ բանակների տապալմանը նոցա գերբնական ոյժի առաջեւ ։ Նորա սուր լսելիքն արագ որսում է ամեն մի վիպական նորութիւն, լինի նա օտար, զէթ միայն գոհացում տայ նորա միշտ լարուած երեւակայութեանն ։ Հայերն, անգամ քրիստոնէութեամբ, լուսաւորուած, չէին կարող անտարբեր մնալ դէպի այնպիսի համբաւաւոր հերոսներ, որոնք՝ անցնելով մի շարք դարեր՝ ցայսօր դեռ կենդանի են ժողովրդի խաւերում ։

Պարսից գրականութեան մասնագէտներն արդէն բաւական ապացուցել են, թէ ո՛րչափ լայն ծաւալ է ունեցել հռչակաւոր իրանական վէպի ազդեցութիւնն․ Պարսից ընդարձակ տէրութիւնն իւր մէջ պարունակում էր զանազան ազգութիւններ, շփւում էր տարբեր լեզու, տարբեր կրօն ունեցող ցեղերի հետ, հասնելով նոյն իսկ Կովկասեան լեռնաշղթան․ այստեղից, շնորհիւ կիսավայրենի Թուրք-պոլովացիների, արեւելեան զրոյցներն անցել են հարաւային Ռուսաստան եւ ժողովրդի սեպհականութիւն դառել (1)։ Հայերին այս աւանդութիւններն պէտք է ծանօթ լինէին դեռ աւելի հին ժամանակներ․ մեր պատմագիրը, խօսելով Տորքի մասին, ի դէպս յիշում է Ռուստամին․ «եթէ կամիս (ասում է Խորենացին Սահակ Բագրատունուն), ստեմ եւ ես յաղագս նորա (Տորքի)՝ անյաջ եւ փցուն, որպէս Պարսիկք վասն Ռոստոմայ Սագճրկի՝ հարեւր եւ քսան փղոց ոյժ ասեն ունել» (2)։ Կասկած չկայ, որ այս հերոսի անունը դեռ Խորենացու ժամանակ տարածուած էր Հայաստանում․ բարեպաշտ հոգեւորականը չէ ծածկում իւր ատելութիւնը դէպի հեթանոսական «անյարմար եւ անոճ» աւանդութիւններն, այլ միայն երախտապարտ իշխանի կամքը կատարելով, ակամայ յիշում է նոցանից մի քանիսը՝ «զորոց ստեմք զբանս եւ զգործս, եւ այնոսիկ մանաւանդ, թէ լուրն զլսելիս մեր տաղտկացուցանէր, այսօր ձեռամբ իմով չարագրեմ զայնոսիկ» (3)։

Պարզ է, որ ժողովուրդը, հետեւելով իւր ձգտմանն, հեռու էր այս տեսակէտից․ նա սիրով ականջ էր դնում այս՝ թէպէտեւ օտար՝ բայց իւր ճաշակին, հասկացողութեանն համապատասխան կենդանի զրոյցներին ։

Հարկաւ, ամեն մի արտաքուստ եկած աւանդութիւն, նախ քան ժողովրդի մէջ հաստատուելն, յարմարւում է նորա կենցաղին, բարքերին, սովորութիւններին, միով բանիւ՝ աշխարհայեցողութեանն, եւ երբ ժամանակի ընթացքում դառնում է նորա սեպհականութիւն, արդէն դժար

---

(1) Տես Vsevolod Miller: «Ekskursy v oblastj russkich narodnych bylin».

(2) Գիրք Բ․ Գլ․ Ը․

(3) Խորենացի «ի Պարսից Առասպելեաց» Ա․ Գլխի վերջում ։

չէ նորան չփոխել օտարազնեայ հերոսներին իւր աւանդական քաջերի հետ, վերագրել նոցա այն, ինչ որ յատուկ էր միայն իւր սիրած դիւցազներին։

Այս օրէնքն, լինելով ընդհանուր բոլոր ազգերի համար, հայ ժողովրդի մէջ ստացել է հետաքրքիր լուսաւորութիւն. բայց նախ տեսնենք, թէ ի՞նչ պայմանների մէջ գոյութիւն ունին բանաւոր աւանդութիւններն մեզանում։

Ինձ դէպք եղաւ 1899 Թ. ձմրանը եւ 1900 Թ. գարնանը ուղեւորւել նախ Ապարան (Էջմիածնայ գաւառ) եւ ապա Կողպ (Սուրմալուի գաւառ), որոնք ժողովրդական բանահիւսութեան կեդրոններ են համարւում Երեւանեան նահանգում. եւ յիրաւի, այս աղքատիկ, անշուք հայ գիւղերում, ուր կարծր, քարքարոտ հողը շատ անգամ անկարող է լինում գիւղացու նոյն իսկ անհրաժեշտ կարիքներին գոհացում տալու, դեռ ծաղիկ զրուցեան մէջ է երգն իւր պէս պէս տեսակներով (իւր երգերով հռչակւած է Սուրմալուի գաւառն), բերանէ բերան է շրջում զրոյցը, առակը, հեքեաթը, հանելուկը, միով բանիւ՝ այն ամենը, ինչ որ զարդարում է մեր գիւղացու չքաւոր կեանքը, նորա անբաժան ընկերն է հանդիսանում մանկութենից մինչեւ խորին ծերութիւն, ուղեկցելով նորան երկրէ երկիր եւ մխիթարելով օտարութեան մէջ։ Մանաւանդ տարածւած են այստեղ աւանդութիւններ ժողովրդի սիրած հերոսների՝ Դաւթի եւ Մհերի՝ եւ Պարսից «փահլեւանների» մասին։ Իրաւ է, դարեւոր գաղթականութիւնը Տաճկա եւ Պարսկահայաստանից, որ չէ ընդհատւում եւ այժմ, եւ որին կարծես դեռ երկար տարիներ դատապարտւած է հայ ժողովուրդը, խլում է նորա աւանդական գանձարանի մի մասը, հետզհետէ թուլացնում նորա յիշողութիւնը նոր հոգսերի, կեանքի նոր պայմանների մէջ, բայց չ'նայելով այս անբարեպատեհ հանգամանքներին ապարանցին եւ կողպեցին դեռ լաւ յիշում է իւր հօր, իւր պապի կամ իւր ժամանակի համբաւաւոր «նաղըլ ասողի» պատմածն, ինքն եւս աւանդելով իւր լսած զրոյցներն՝ ձմեռային պարապ ժամանակ՝ կիսալոյս «յօդայում» խմբւած գիւղացիներին։ Գրեթէ ամեն մի գիւղ ունի իւր «ասողը», որ շնորհիւ իւր գիտութեան առանձին յարգանք է վայելում բոլորից, իսկ աւելի հռչակաւորը՝ ամբողջ գաւառում։

Բացի այդ, տարին մի անգամ այս կողմերն են գալիս մոկացիներ եւ մշեցիներ «քէչայ գործելու» կամ «բուրդ գզելու» եւ այս պարապմունքի ժամանակ իրենց երկրի «նաղըլները» ասում հետաքրքիր գիւղացի ամբոխին։ Այսպիսով աւանդութիւնների կապը ոչ միայն չէ թուլանում, այլ եւ նորոգւում գրեթէ ամենայն տարի գաղթականների եւ ժամանակաւոր պանդուխտների շնորհիւ։

Ահա՛ այս գաւառներում, այս փոքրիկ գիւղերում, որոնք ապաստանած են Արագածի հարաւային լանջի վերայ եւ կամ ցիր-ցան սփռւած

Արարատեան ընդարձակ հովիտում, ցարդ Թարմ է մնացել հնութեան մի հարուստ պաշար, որ կրկին կենդանացնում է մեր առաջեւ դիւցազնական դարը իւր հեքեաթային գրաւիչ քողի տակ։

---

Պարսից դիւցազնական վէպն յայտնի է մեզանում «Ռուստամի Զալ» ընդհանուր անուամբ։ Զ'նայելով վերնագրին, աւանդութեանց բովանդակութիւնը հանդէս է բերում ոչ միայն Իրանի համբաւաւոր դիւցազնի, այլ եւ միւս փահլեւանների քաջութեան գործքերը. ըստ մեծ մասին Ռուստամ անգամ չէ յիշւում եւ կամ աննշան դեր է խաղում, կարծես թողելով ասպարէզն աւելի երիտասարդ հերոսներին։

Սոցանից ամենամեծ հաչակը անշուշտ վայելում է Բ ո ւ ր զ է ն։ Այս հերոսի անունն իրան տեղ չէ գտել «Արքայից գրքում», իսկ այն, ինչ որ մեզ ցարդ յայտնի է պարսից զրոյցներից (1), միանգամայն տարբերւում է հայկական խմբագրութիւնից, որ թէ նիւթի եւ թէ արտաքին ձեւի նկատմամբ տալիս է մեզ մի գեղեցիկ ամբողջութիւն։ Այստեղ մեր առաջեւ ունենք մի անձնաւորութիւն, բոլորովին տարբեր յատկութիւններով օժտուած. նորա արտասովոր ձայնն, որի մէջն է նորա ոյժը, բացի լոկ մարմնական ոյժից, միանգամայն ջոկում է նորան փահլեւանների շարքից եւ բոլորովին առանձին, պատուաւոր տեղ տալիս նորան։ Ճշմարիտ է, այս յատկութիւնն վերագրւում է նորա ամբողջ ցեղին, բայց ներկայ աւանդութիւններում նորա եւ ոչ մի ազգականն հանդէս չէ գալիս այս օժիտով։ Իւր ճչով Բուրզէն յիշեցնում է ռուսաց Solovej (razbojnik) (Սոխակ) աւազակին եւ հայոց Զէնով Օհանին. թէպէտեւ սոցա դերերը տարբեր են միանգամայն. փահլեւանի ահաւոր գոչը աւելի կործանարար է հանդիսանում, քան անտառում նստած աւազակի շւոցը կամ Դաւթի հօրեղբօր «բոռալը». Նորա ձայնից 12 բլուր փուլ է գալիս եւ մի ամբողջ բանակ ի փախուստ դառնում։

Բացի այդ Բուրզէն իւր մէջ կրում է եւ մի այլ յատկութիւն՝ մարմնի ծանրութիւն, որ արեւելքում համարւում է գրեթէ անբաժան իսկ փահլեւանական ոյժից. Ռուստամին, Մհերին, Սվեատոգորին (ռուսաց վէպում) հողն այլ եւս չէ պահում. նոյն իսկ նորա անունն (برزو = Բուր-

---

(1) Բարզուն պարսից վէպում («Բարզու-նամէհ») Զոհրաբի որդին է, ծնած Տուրանում իւր հօր պանդխտութեան ժամանակ. Աֆրասիաբ թագաւորը, հրապուրուած նորա գեղեցկութեամբ, տանում է իւր Դուար ծառայութեան եւ յետոյ իբրեւ ընտիր փահլեւան ուղարկում Իրանցիների դէմ. Բարզուն գերւում է եւ՝ իմանալով իւր ծագումը, մնում է ընդ միշտ Իրանում։ Բարզու-նամէհի խմբագրութիւնն անպայման կրում է Զոհրաբի աղդեցութեան հետքերը։ Mohl ենթադրում է սորա կազմութիւնն Ե-Զ դարը (Préface ZXV-ZXVI).

զրւ. = յաղթանդամ) արդէն պատկերացնում է իւր մէջ ժողովրդի տեսակէտն։ Այսպիսով, պարսից հերոսի մէջ ամփոփուած են՝

ա) ահագին ֆիզիքական ոյժ

բ) անսովոր ձայն

գ) մարմնի ծանրութիւն՝ երեք յատկութիւններ, որոնք պիտի գըրաւէին ժողովրդի երեւակայութիւնն եւ առանձին հետաքրքրութիւն ընծայէին հերոսի անձնաւորութեանը.

Պարսից դրոյցները, նախ քան հայ ժողովրդի մէջ հաստատուելն, ըստ երեւոյթին անցել են եւ մի այլ խմբագրութիւն՝ քրդական, որի ազդեցութիւնն նկատելի է նոյն իսկ սեպհական անուններում, ինչպէս՝ Մրջանէ Ջագօ, Թզբուրէ Շէրան, Դօփօ, Ձախկէ եւ այլն. Իրանի դիւցազները պէտք է որ լաւ ընդունելութիւն գտնէին այս կիսավայրենի ազգի մէջ, որ ցայսօր հաւատարիմ է մնացել իւր նախնեաց յիշատակին, ասպատակելով հայ գիւղեր եւ առեւանգելով հայ կանայք։

Այս աւանդութիւններն, որոնք մի ժամանակ անշուշտ առանձին էին պատմւում, հայ ժողովրդի մէջ ձուլուել են եւ կազմել մի ամբողջ վէպ. պատմողն սովորաբար կապում է նոցա, հաւատացած լինելով, որ բոլոր այս հերոսները կազմում են Ռուստամ-Զալի ցեղն։

Արդէն այս տեսակէտը ինքն ըստ ինքեան հետաքրքիր է, բայց մեզ համար առաւել նշանաւոր է այն հանգոյցը, որով ժողովուրդը կապում է իւր եւ օտար դիւցազների անունները, այն ազդեցութիւնն, որ անկասկած դրոշմել են Իրանի դրոյցները մեր ժողովրդական վէպի վերայ։

Ես բնաւ դիտաւորութիւն չունիմ ներկայ խնդիրս ենթարկել այստեղ մանրամասն քննութեան, այլ առաջ կ'բերեմ մի քանի հետաքրքիր համեմատութիւններ (1)։

Նախ տեսնենք՝ թէ ինչպէս է ինքն՝ ժողովուրդը նայում հերոսների այս տոհմի վերայ. աւողներից մէկը (Մուրադ Մխիթարեան) նոցա ցեղը սերում է ուղղակի Մհէրից, որին յաջորդում է նորա որդի դիւամարտիկ Ռուստամի Զալն։ Սա արդէն ապացոյց է, որ ժողովուրդը ճըգնում է հաշտեցնել իւր յիշողութեան մէջ միմեանց հանդիպած զանազան փահլեւաններին, որոնք օժտուած են անսովոր ոյժով, ձայնով, մարմնի ծանրութեամբ եւ այլն, հայացնելով օտարներին։ Միւս վարիանտում (Բարսեղ Յարութիւնեան) յիշւում է իբրեւ Զալի եղբայր Սասունցի Դաւիթը, որի «տասնըհինգ փթանոց դուրզը» ժառանգում է նորա որդի Բուրզէն։ Միեւնոյն վարիանտում Ջէնով Յովան, հերոսների շարքն անցած, օգնում է Ռուստամին եւ Դօփօյին հորից հանել իւր եղբօրորդի Բուրզէին եւ աւերել նորան գերող Թագաւորի քաղաքը։ Հետաքրքիր է,

---

(1) Խնդիրս աւելի մօտ կ'շօշափեմ մեր ժողովրդական դիւցազնական վէպն ուսումնասիրելիս։

որ միեւնոյն դերում մենք տեսնում ենք Ցովանին եւ մեր ժողովրդական վէպում (1)։ Բոլոր տարբերութիւնը միայն այն է, որ նորա անւոր ձայնը այստեղ ոչ թէ անհատական, այլ արդէն իբրեւ ցեղական շնորհք է հանդիսանում։ Վէպիս գործողութիւնն սկիզբն է առնում Սասուն'ից, ըստ այնու եւ նորա հերոսները շարունակում են կրել «Սասմայ Ծռեր» ընդհանուր մականունն։

Այսպիսով ուրեմն օտարազգի դիւցազները, շնորհիւ իրանց երկարամեայ գոյութեան հայ ժողովրդի մէջ, մի քանի տեղերում ընտելացել են նորան, կազմելով մի ցեղ նորա ազգային հերոսների հետ միասին։

Առաջ տանելով համեմատութիւնը, կ'տեսնենք, որ հայ դիւցազների վերայ դրոշմւել են պարսից փահլեւանների յատկութիւններն, եւ նախ եւ առաջ Մհերի նկատմամբ, որի անձնաւորութիւնն եւ հերոսագործութիւններն մօտ յիշեցնում են Բուրզէին։ Եւ յիրաւի, այնպիսի ընդհանուր միջադէպեր, ինչպէս՝

ա. Մհերի պատահելն պառաւի հետ, որ Բուրզէի վարիանտներում դեւի կերպարանք է ընդունում.

բ. Երկուսի եւս Սասունի սահմաններից դուրս աստանդական շրջիլն.

գ. Թշնամի քաղաքներ աւերելն

դ. Հորի մէջ մնալն

ե. Զանազան թագաւորներին պաշտպան հանդիսանալն

այս բոլորն անկասկած վկայում է յօգուտ մեր համեմատելի աւանդութեանց ազգակցութեանը։ Առաւել եւս նմանութիւնը զգալի է դառնում, երբ համեմատենք այս երկու հերոսների ֆիզիքական ոյժի նկարագրութիւնը, կուելու ձեւերը սովորութիւններն եւ այլն.

ա. Թշնամուն կէս անելն («ճղւտելն») երկուսի եւս սովորական դատաստանն է.

բ. Գործածելի զէնքն է՝ արմատահան արած ծառն.

գ. Սովորական զբաղմունքն է՝ որսորդութիւն.

դ. Հայ եւ պարսից դիւցազները չափազանց ծանր են մարմնով (2). ծերացած Մհերը, որպէս, խրւում է հողի մէջ. Բուրզէի տակ ջարդւում է աթոռը, որ փոխարինում են անկողնով.

ե. Վերջապ ս երկու հերոսն էլ ժողովրդին պատկերանում են իբրեւ անյաղթ տիտաններ, օժտւած գերբնական զօրութեամբ, որոնցից պատկառում է նոյն իսկ մահի դերանդին։

Զ'նայելով, որ երկու դիւցազն էլ նման դերերում եւ յատկութիւններով են հանդէս գալիս, սակայն այս հանգամանքն չ'պէտք է հիմնովին խախտէ Մհերի վէպի ինքնուրոյնութիւնն. բաւական է ի նկատի առնել

(1) Տես իմ գրի առած «Թըլօր-Դաւիթ եւ Մհեր», Էջմիածին 1899 Թ.

(2) Ռուստամ Շահնամէում կոչւում է پیلتن = փղի մարմին ունեցող։

ա․ Նախ այս դիւցազնի ա ն ո ւ ն ն, որ ամենայն ճշտութեամբ եւ անփոփոխ հանդէս է գալիս մեր դիւցազնական աւանդութիւններում։

բ․ Դաւիթից յետոյ Մհերը ժողովրդի ամենասիրելի հերոսն է հանդիսանում․ շատ վարիանտներում նորան դեռ շրջապատում են Սասունի քաջերն։

գ․ Մհերի կռիւը Թեւաւոր Աստղիկ երզնկացու հետ, որ ըստ իս կազմում է այս աւանդութեանց հինաւոր եւ հնագոյն մասը, բոլորովին առանձին տեղ է տալիս նոցա մեր վէպերի շարքում (1)։

դ․ Վերջապէս, ժողովուրդը մինչեւ այժմս էլ հաւատացած է, որ Մհեր Աստուծոյ հրամանով փակուած է հռչակաւոր Վանայ քարի մէջ եւ մի օր պէտք է դուրս գայ աշխարհն աւերելու։

Կարեւոր եմ համարում նկատել այստեղ, որ Մհեր բաւական մօտ յիշեցնում է մեզ Արտաւազդին, Արտաշիսի որդուն․

ա․ Որպէս Դաւիթը Մհերին, Արտաշէս անիծում է իւր որդուն։

բ․ Մհեր եւ Արտաւազդ դժգոհ են իրանց դրութիւնից հայերի մահից յետ։

գ․ Երկուսն եւս խօսում են նոցա հետ եւ պատասխան ստանում գերեզմանից։

դ․ Աներեւութանում այրի մէջ, ուր ցայսօր մնում են շղթայուած (Խորենացի Գիրք Բ․ Գլ․ ԿԱ)։

Նմանութիւնն ակներեւ է․ անկասկած Մհերի տիպարը կենդանի էր դեռ Խորենացու ժամանակ «պառաւանց զրոյցներում․» անունն այստեղ դեր չի խաղում․ խնդիրը այն ազգու տպաւորութեան մասին է, որ այս հնագոյն դիւցազն ընդ միշտ դրոշմել է հայ ժողովրդի երեւակայութեան վերայ։

---

(1) Մհեր իւր հօր մահուան վրէժն է առնում, աւերելով Զմշկիկ Սուլթանի քաղաքները․ բոլորը նորա ահից փախչում են։ Մի տեղ նա գտնում է միայն ծերունի Փիրմուսին նորա դստեր՝ Դեղձոնի հետ, որ նա պսակում է Խոր-Մանուկի հետ, իսկ ինքն առնում Գոհար-Խանումին։ Գոհար աստղից գուշակում է, որ մեծ վտանգ է սպառնում նորա ցեղակիցներից մէկին․ Մհեր կնոջ հետ շտապում է Փիրմուսի մօտ։ Առաւօտեան գալիս է Աստղիկ երզնկացին, «Դեղձոնի նշանածը», եւ սկսում իւր կռիւը Մհերի հետ, հարւածելով նորան վերեւից։ Գոհար, տեսնելով իւր ամուսնու նեղ դրութիւնն, խնդրում է Աստղիկին խնայել իւր անփորձ հակառակորդին՝

— Աստղիկ երզնկացի, Մհեր խամ տղայ է, շատ մը՛ զօռի Մհերին, հըլա խսկի կռիւ չ՛էրի, նոր կռիւ կ՛էնի։ — Սիւտակ ծծեր դուս թալեց Գոհար խանում, ըսեց․ — Բըզի իդա սիւտակ ծծերու մէջ կ՛պահիմ, Մհերին շատ մը՛ զօռի։

Աստղիկ երզնկացին օր տեսաւ սիւտակ ծծեր, կայնաւ․ օր կայնաւ, Մհեր տըկեւանց դուրզ զարկեց․ օր զարկեց, առաւ սիրտ, պառեկից դուս տւեց։ («Սասմայ ծռեր» Գարեգին Սարկաւագ․ էջ 56)։ Երկու անտիպ վարիանտներ, որ ձեռքիս տակ ունեմ, պարունակում են իրանց մէջ նոյն միջադէպը։

Աստեղամարտ Մհերն ինձ յիշեցնում է միւս կողմից բաբելական յայտնի հերոս Ի զ դ ու բ ա ր ի ն (= Նեբրովդին)։ առաջ եմ բերում վէպիս համառօտ բովանդակութիւնն։

Երբ Ելամացիք նուաճում են Երեխ քաղաքը, Իզդուբար (Մարադից) կիսաստուած Էա-բանիի օգնութեամբ սպանում է թշնամեաց Խումբաբա Թագաւորին եւ փրկում քաղաքն։ Հերոսի վերայ սիրահարւում է Ի շ տ ա ր դիցուհին (1), բայց հերոսն, որպէս զի չենթարկւի իւր նախորդների՝ Իշտարի սիրականների՝ տխուր վիճակին, մերժում է իւր փոխադարձ սէրն։ Անպատուած դիցուհին խնդրում է իւր հայր Անու՛ին ըստեղծել «երկնից աստղ», որ պիտի ոչնչացնէ Իզդուբարին․ բայց դիւցազն այս անգամ եւս յաղթող է հանդիսանում իւր հաւատարիմ ընկերոջ օգնութեամբ։

Այստեղից սկսւում է մի մեծ պակասորդ։ Իզդուբարին ապա մենք գտնում ենք հիւանդ, իսկ Էա-բանին՝ մեռած․ իւր ընկերոջն կենդանացնելու, իսկ իրան առողջացնելու համար նա ստիպւած է որոնել իւր պապ Պիր-Նապիշտին, որին մահն երբէք չի վտանգում մերձենալ։ Երկար թափառելուց յետոյ նա վերջապէս հասնում է Պիրի բնակարանն եւ նորա միջոցաւ առողջանում։ Ծերունին պատմում է ջրհեղեղի զրոյցըն, նաւ շինելն եւ իւր փրկւելն ընդհանուր կորստից։ Ապա առողջացած դիւցազնը վերադառնում է Երեխ եւ ստանում իւր ընկեր Էա-բանին (2)։

Այս ամբողջ զրոյցն պատկերացնում է իւր մէջ Մհերի միջադէպը Թեւաւոր Աստղիկի եւ ծերունի Փիրմուսի հետ․ անկասկած, նա պատկանում է ալեւոր հնութեան, որի մթնոլորտը թափանցել դեռ անզօր է հանդիսանում գիտութիւնն։

Եթէ բաժանենք Մհերի աւանդութիւններն իրանց հիմնաւոր մասերի, կ՛տեսնենք, որ սոքա բաղկացած են հերոսի մի շարք, երբեմն անկապ, արկածներից այս-այն երկրներում շրջելիս։ Նոցանում բացակայ է այն ընդհանուր գաղափարն, որ յայտնապէս աչքի է խփում Դաւիթի զրոյցներում եւ նոցա ահագին առաւելութիւնն կազմում։ Անկասկած, Մհերի վիպական աւանդութիւններն ժամանակի ընթացքում քայքայւել են եւ մեզ հասել միայն չնչին քանակութեամբ, այն եւս բաւական այլայլւած։

Մեր խօսքն այստեղ կարող է լինել, հետեւապէս, միայն այն զօրեղ ազդեցութեան մասին, որ պարսից եւ բաբելական վէպերն դրոշմել են

(1) Իշտար Բաբելոնի դիցուհին է, որ համապատասխան է Venera մոլորակին․ հաւանական է, որ այս անունից է առաջել (ի նկատի ունենալով բաբելացիների աստեղագիտութեան հռչակը) հնդ-եւրոպական «աստղ» (ἀστήρ, ستار, astre, stella) բառն։

(2) Ամբողջ վէպը բաղկացած է 12 տախտակներից եւ պատկանում է Ասուրբանիպալի (668-626) գրադարանին․ գտնւած է 1854 թ․ Նինուէյում (Hormuzd Rassam)։

Մհերի աւանդութեանց վերայ, խորը թաղելով նորա սկզբնական սերմն ։

Բնական է, որ նոյն իսկ մեր պատմական զրոյցներն, ինչպէս Դաւթինը, ազատ չեն մնացել հարեւանի ազդեցութիւնից․ այնպիսի մի խոշոր անձնաւորութիւն, ինչպէս Ռուստամ, պատկանում են զանազան ազգերի եւ անվերջ դարերի․ հարկաւ նորա անունն կարող էր մոռացուած լինել եւ կամ նոր հերոսներով փոխարինուած, բայց նորա դիւցազնական տիպարն անշուշտ ապրում էր հայ ժողովրդի մէջ եւ ծառայում նորեկ քաջերի համար պատրաստի օրինակ ։ Նորա երկիւղածութիւնն, անշահասիրութիւնն, ազնւութիւնն, անյաղթ ոյժի հետ միացած, պէտք է գրաւէին ոչ միայն պարսից, այլ եւ դրացի ազգերի համակրանքն ։ Հայ դիւցազնական վէպն ամբողջապէս կրում է պարսից ազդեցութեան հետքերն․ նոյն են կռուի ձեւերն, զէնքերն, ծառը արմատահան անելն, հորերի մէջ մնալն, դեւերի հետ ճակատելն, հօր եւ որդու կռիւն եւ այլն եւ այլն ։

Բայց ի նկատի առնելով իրանական վէպի լայնատարած հռչակը, դիւրին է չափազանցութեան մէջ մոլորել ։ Որչափ էլ զօրեղ լինի ազգերի փոխադարձ կուլտուրական ազդեցութիւնն, վերջինս, յայտնի պայմաններում, որոշ սահմաններից չի անցնում․ ամեն մի ազգ ունի իւր մտածելու եղանակն, իւր, միայն նորան յատուկ ստեղծող ոգին, իւր աշխարհայեցողութիւնն ։ Ժամանակն անզօր է հանդիսանում բնաջինջ անել այս գերիշխող ոգին, քանի որ մի ազգ դեռ գոյութիւն ունի ։ Վերոյիշեալ պարսից ազդեցութիւնն ընդհանրապէս զգալի է արտաքին մանրամասնութիւններում եւ կամ պատահական միջադէպերում, որ դարեր ի վեր կուտակուել են մեզանում ։ Չպէտք է մոռանալ, որ

ա․ հայ դիւցազնական վէպն ամբողջապէս սերտ կապուած է որոշ տեղի հետ ։

բ․ Սասնոյ պատմութիւնն, նորա վերջին յուսահատ կռիւն եկւոր թշնամիների հետ կազմում է այս զրոյցների գլխաւոր հանգոյցն եւ ամբողջացնում նոցա ։

գ․ Վերջապէս, վէպիս մեծագոյն հերոսն՝ Դաւիթ Սասունցին կրում է իւր մէջ այնպիսի տարբեր բնաւորութիւն, որից զուրկ են պարսից փահլեւաններն, նորա ամբողջ անձնաւորութիւնն այն աստիճան ձուլուել է ժողովրդի հետ, որ ամենայն իրաւամբ նորան է պատկանում հայ ազգային հերոսի համբաւն ։

## Բ. «ԱՐՔԱՑԻՑ ԳՐՔԻ» ԳՐԱԿԱՆԱԿԱՆ ՄՇԱԿՈՒՄԸ

*Ի նկատի առնելով այն լայնածաւալ հռչակը, որ Իրանի հերոսները տարածել են անգամ օտար ազգերի մէջ, աւելորդ չեմ համարում առաջ բերել այստեղ սոյն աւանդութեանց գրականական մշակման պատմութիւնը։*

*Դժար է որոշել, թէ ո՞ր ժամանակ են կազմւել այս զրոյցներն, ինչպէս դժար է որոշել որ եւ է հեքեաթի հեղինակին. մի քանի անուններ, ինչպէս Ռուստամինը, անկասկած պատկանում են խորին հնութեանը եւ դարեր ի վեր կենդանի մնացել ժողովրդի մէջ շնորհիւ իրանց գերբնական զօրութեան։ Միայն ժամանակի ընթացքում, յայտնի անցքերի ազդեցութեան ներքոյ, նոքա միացել են պատմական անձնաւորութիւնների հետ եւ կազմել դիւցազներգութեան նոր շրջան։*

*Պարսից Տուրանի դէմ մղած պատերազմներն եւ տարած յաղթութիւններն արդէն ի հնումն ներկայացնում էին հարուստ եւ արժանի նիւթ վիպասանութեան համար։ Թէ քաղաքական կեանքի խոշոր անցքերըն եւ թէ նոցանում հռչակւած գործիչներն միշտ վառ են պահում ժողովրդի ստեղծող ոգին, նոր պաշար մատակարարում նորան. անցնելով նորա երեւակայութեան գործունէութիւնից, նոքա կրկին կենդանանում են եւ կերպարանափոխւում՝ պատմական անցքն առասպելանում է, գործիչն՝ դիւցազնանում։ Ապա հանդէս են գալիս եւ միանում նորերի հետ ժողովրդի հին հերոսներն, շարունակելով դեռ ճակատել դեւերի եւ այլ հրէշների հետ։*

*Զարմանալի չէ, որ պարսից զրոյցները ախորժելի էին ոչ միայն ժողովրդի ստոր խաւերին, այլ շարժում նոյն իսկ թագակիրների հետաքրքրութիւնը, որոնք սիրով ծանօթանում էին իրանց նախորդների փառաւոր անցեալի հետ։ Բայց կապել այս աւանդութիւններն միմեանց հետ, կազմել նոցանից մի որ եւ է ամբողջութիւն անհնարին էր, քանի որ նոքա ցրւած էին պարսից ընդարձակ տէրութեան զանազան կողմերում. պէտք էր մի հեղինակաւոր նախաձեռնող, որ կարող լինէր իրագործել այս դժար խնդիրը. եւ ահա Խոսրով Անուշիրւան* (531-578) *հրաման է արձակում՝ հաւաքել իւր տէրութեան մէջ շրջող բանաւոր աւանդութիւններն եւ պահել արքայական գրադարանում։ Սա եղաւ առաջին փորձն, որին հետեւեցին նորա յաջորդները։*

*Յազկերտ Գ-ի* (632-651, *սա վերջին Սասանեանն էր) հրամանաւ դեհկան* (1) *Դանիշվերը հրաւիրւեցաւ կարգի բերել Անուշիրւանի ժողո-*

(1) *Դեհկանները կազմում էին պարսից բարձրագոյն կալւածատէր ազատանիների դասակարգը, որոնք իրանց սերում էին հնագոյն տոհմերից. հարկաւ, նոքա անտարբեր չէին կարող լինել դէպի հայրենի աւանդութիւններն։*

*վածուն եւ լրացնել պակասորդը մովպետների* (1) *օգնութեամբ ։ Ֆիրդու-սին այսպէս է նկարագրում «Արքայից գրքի» կազմութիւնն ․*

*«Հնուց ի վեր կար մի գիրք , որ պարունակում էր իւր մէջ բազ-«մաթիւ պատմութիւններ ․ իւրաքանչիւր մովպետ ունէր այս գրքից մի «մի մաս եւ ամեն մի զարգացած մարդ պահում էր իւր մօտ օրանից մի «հատուած ։ Դեհկաններից տանից մի քաջանձնեայ եւ հզօր , իմաստասէր «եւ լուսաւոր փահլեւան, որին հաճոյ էր ուսումնասիրել հին դարերն եւ «ժողովել հնոց զրոյցներն, հրամայեց գալ գումարել իւր մօտ ամեն մի «գաւառից մի մի ծեր մովպետ , որոնք իրանց մօտ ունէին այս գրքի «մասերը ։ Ծերունիները մի առ մի պատմեցին նորա առաջեւ հռչակաւոր «թագաւորների եւ պատերազմների մասին իրանց գիտցած աւանդու-«թիւններն ։ Նա լսեց նոցա պատմածը եւ կազմեց մի արժանայիշատակ «գիրք ․ թէ մեծերը եւ թէ փոքրերը փառաբանում են նորա կատարած «գործը»* (2) ։

*Դանիշվեր գրեց իւր գիրքը , ժամանակի պահանջին համաձայն , պեհլեւի լեզուով,* (3) *որ պարունակում էր իւր մէջ պարսից պատմութիւ-նը Կայումորզից մինչեւ Խոսրով Պարւիզ եւ կրում «Խոդայի Նամէհ»* (*Արքայից գիրք*) *վերնագիրը ։*

*Արաբացոց արշաւանքից յետ Խոդայի Նամէն տեսնում ենք Աբդալ-լահ-իբն-ալ-Մոկաֆֆայի ձեռքում, որ ի թիւս բազմաթիւ գրուածքների թարգմանել տուեց արաբերէնի եւ Դանիշվերի գիրքը «Պատմութիւն ար-քայից» վերնագրով ։ Այս թարգմանութիւնն մեզ չէ հասել ։*

*Արաբացոց իշխանութիւնը Պարսկաստանում, որքան էլ որ զօրեղ լինէր , ոչ միայն չմեռցրեց ազգային վիպասանութեան ոգին , այլ եւ պատճառ դառաւ նորա վերածնման ։ Հազիւ Խալիֆատը սկսեց թուլու-թեան նշաններ ցոյց տալ , պարսից տարրը կրկին գլուխ բարձրացրեց եւ սկսեց մի նոր կռիւ օտարի իշխանութեան դէմ ։ Արեւելեան գաւառ-ների կառավարիչները , օգտուելով իրանց հեռաւորութիւնից , աւելի եւ աւելի անկախ դիրք բռնեցին դէպի Բաղդադի լիազօր տէրը ․ պարսից իշխանները ամեն ջանք գործ էին դնում կեանքի հրաւիրելու ազգային աւանդութիւնները, նոցանում որոնելով ամուր յենակէտ արաբացոց քա-ղաքական ազդեցութեան դէմ* (4) ․ *կարճ միջոցում նոցա արքունիքը լը-*

(1) *Այս անունն , որ յիշւում է եւ մեր մատենագրերում , յատկա-ցրած էր պարսից հոգեւոր դասին ։*

(2) Mohl, «Le livre des rois». Préface VII-VIII .

(3) *Պեհլեւի լեզուն կազմւել է Միջագետքում սեմիտական եւ պար-սից լեզուների խառնուրդից ։ Արաբացոց արշաւանքի ժամանակ նա ար-դէն տիրապետում էր արեւմտեան Պարսկաստանում իբրեւ պաշտօնական լեզու , մինչդեռ արեւելեան մասում շարունակում էին խօսել զուտ պարսկերէն ։*

(4) Nöldeke *միանգամայն ընդդէմ է այս կարծիքին* («Schahname» Grundriss der iranischen philologie 1896 II B. I Lief . *էջ* 150 ․

ցւեցաւ բազմաթիւ պարսիկ բանաստեղծներով եւ գիտնականներով , որոնք այստեղ գտնում էին սիրալիր ընդունելութիւն եւ լուսաւոր հովանաւորութիւն ։ Մանաւանդ հռչակւեցաւ, իբրեւ մեկենաս, Յակոբ, Լէյիսի որդին, Սոֆարի ցեղի հիմնադիրը․ հասարակ զինուորից դառնալով Պարսկաստանի տէր , Յակոբ հրամայեց իւր վէզիր Աբու Մանսուրին թարգմանել տալ պարսկերէնի այն, ինչ որ Դանիշվեր գրած էր պեհլեւի լեզւով , սորան կցելով եւ զանազան գրոյցներ, որ պահպանւել էին Խոսրով Պարվիզի եւ Յազկերտի ժամանակներից ։ Աբու Մանսուրը, իւր պետի հրամանը կատարելով, հրաւիրեց իւր ժամանակի ընտիր ոյժերը, որոնք «Արքայից գրքում» ամփոփեցին բոլոր իրանց ձեռքի տակ ունեցած գրաւոր եւ բանաւոր պաշարն ։

297/909 Թ․ Սոֆարեանները գահընկեց եղան եւ նոցա փոխարինեցին Սամանիները (Սասանեան ցեղից) ։ Սոքա նոյն եռանդով շարունակեցին իրանց նախորդների գործը․ յայտնի քերթող Դակիկին (1) ձեռնարկեց ոտանաւորով բանահիւսել Դանիշվերի գիրքն , որ թարգմանւած էր Յակոբի հրամանով․ բայց հազիւ նա գրած էր 2000 տող, ինչպէս ստրուկի մահացու հարւածը վերջ դրեց նորա գործունէութեանը ։

Սամանիների անկումից յետոյ Պարսկաստանը անցնում է Ղազնեւիների ձեռքը ։ Այս հարստութեան երկրորդ ներկայացուցիչը՝ Մահմուդ Շահը (997-1030) ամեն ջանք գործ էր դնում իւր քաղաքական դրութիւնըն ամրացնելու․ Նորա ժամանակ պարսից լեզուն աւելի լայն ծաւալ ստացաւ եւ պաշտօնական դարձաւ նոյն իսկ նորա Դրանը ։ Նորա արքունիքը ներկայացնում էր կատարեալ ճեմարան, ուր ընտիր քերթողները կարդում էին իրանց ոտանաւորները եւ մրցում միմեանց հետ թագաւորի ներկայութեամբ ։ Ցանկանալով կազմել մի աւելի հարուստ ժողովածու , Մահմուդ հրամայում է հաւաքել իւր տէրութեան մէջ թէ գրաւոր եւ թէ անգիր տեղեկութիւններ , որոնք կարող էին հին պարսից պատմութեան նիւթ մատակարարել ։ Պաշարը արդէն հարուստ էր, մնում էր միայն մի տաղանդաւոր գրիչ, որ անշունչ նիւթի հոգի ներշնչէր ։ Այս դիտաւորութեամբ Սուլթանը մրցանակ նշանակեց ժամանակակից յայտնի քերթողներին ։ Սոցանից մէկը , Անզարին, յայտնեց Մահմուդին, որ նա իրան կոչւած չէ համարում այս դժար խնդիրը իրագործելու, բայց նա ունի մի ընկեր , որի բարձր տաղանդը միանգամայն համապատասխան է այս վեհ գործին (2) ։

Այս քերթողը Աբու՛լ Կասիմ Ֆիրդուսին էր ։

---

(1) Այս կեղծանունով բանաստեղծն ծածկում էր իւր իսկական՝ կունիա Աբու Մանսուր ։
(2) Mohl, Préface, p. XVII-XX.

## Գ ՖԻՐԴՈՒՍԻ

*Ֆիրդուսին ծնել է* 935 (*ըստ այլոց* 936-*ին*) (1) *Շադաբում, Թուս քաղաքի շրջակայքում։ Նորա հայրը (Մաօլանայ Ահմէդ, դեհկաններից) տուած պիտի լինէր որդուն իւր ժամանակի բարձր կրթութիւն, որովհետեւ Ֆիրդուսին քաջ ծանօթ էր ոչ միայն արաբերէն, այլ եւ պեհլեւի լեզուներին հետ, որ արեւելեան Պարսկաստանում հազուագիւտ էր համարւում։ Դեռ երիտասարդ հասակում նա արդէն ձեռնարկել էր վիպական թարգմանութիւնների եւ՝ երբ Դակիկի մահւան գոյժը ստացաւ, ցանկացաւ փորձել իւր ոյժերը այն ահագին պաշարի վերայ, որ դեռ նոր էր սկսել մշակել հանգուցեալ քերթողը։*

*Նա գրում էր սկզբում ծածուկ, հեռացած աշխարհի աղմկից· բայց շուտով նորա վէպի հատուածները, դեռ լոյս չ՚տեսած, արդէն յայտնի եղան ամեն մի զարգացած պարսկի· ինքն Աբու Մանսուր, նահանգի կառավարիչը, կոչեց նորան իւր մօտ, հրամայեց կարդալ իւր ներկայութեամբ մի քանի կտոր եւ՝ հրճուած նորա տաղանդով, խոստացաւ իւր հովանաւորութիւնն։*

*Թէ ինչ պատճառներ ստիպեցին Ֆիրդուսին թողնել իւր միայնակ կեանքն եւ քաղաք տեղափոխուիլ Սուլթան Մահմուդի մօտ, կարծիքները տարբեր են· յամենայն դէպս նա հասաւ իւր գլխաւոր նպատակին. այժմ նորա ձեռքի տակ էր մի ահագին պաշար, որ այնպէս եռանդով ժողոված էր Մահմուդը։ Սուլթանը տւեց նորան առանձին ապարանքներ իւր արքունիքին կից, որը բաժանւում էր միայն պարտիզով։ Շինութիւնն ինքն արդէն ներկայացնում էր մի բանաստեղծական աշխարհ· նորա պատերը զարդարած էին զանազան նկարներով, որոնք պատկերացնում էին Պարսից եւ Տուրանի հերոսներին, երիվարներ, փղեր, վագրներ եւ այլն։ Մահմուդը սիրում էր շատ անգամ կարդալ տալ իւր ներկայութեամբ քերթողին իւր վէպն, որին հետեւում էին երաժշտութիւն եւ պարեր· նա միշտ խոստովանում էր, թէ նոյն պատմութիւնները, որ նա առաջուց լսել կամ կարդացել է, Ֆիրդուսիի գրչի տակ բոլորովին նոր կեանք էին առնում, քաջութեան եւ բարեպաշտութեան հրաւիրում լսողին։ Անպայման քանքարաւոր բանաստեղծը հնոց աւանդու-*

(1) Mohl *ենթադրում է նորա ծննդեան տարին* 329 *թ։ Ամենահին տեղեկութիւններ քերթողի կենաց մասին քաղում ենք Ահմադ-իբն-Օմար-ալ-Արուզիից, որ մօտ* 100 *տարի նորա մահից յետ այցելեց նորա գերեզմանը Թուս քաղաքում եւ անշուշտ օգտւեց տեղական աւանդութիւններից։ Բացի այդ իբրեւ աղբիւրներ ծառայում են ա) Դովլեաշահ, բ) Ջամի գ) Լուտֆ-Ալի-Ատաշկադէ (Տես* Nöldeke, *«Շահնամէհ» էջ* 154)*։*

թիւններին ներշնչում էր իւր ոգին եւ մեղմացնում նոցա սկզբնական կոպտութիւնը (1)։

Ֆիրդուսիի յանկարծակի հռչակն եւ սուլթանի մտերմութիւնը շարժեցին պալատականների նախանձը, որոնք ամեն հնար գործ էին դնում սեւացնելու նորան սուլթանի աչքերում. մանաւանդ նա ատելի դարձաւ Հասան Մէյմէնդի'ին, Մահմուդի վէզիրին (2). չարերը պնդում էին անգամ, որ նորա հռչակը առեղծել է ոչ թէ նորա տաղանդը, այլ հետաքրքիր նիւթը։ Սորա վերայ աւելացաւ մի նոր հարուած եւս. 65 ամեայ ծերունին կորցրեց իւր միակ որդուն առոյգ հասակում (37 ամեայ)։ Զ'նայելով այս դժբախտ հանգամանքներին, շրջապատած բանսարկութիւններով, նա ամենայն եռանդով դեռ շարունակում էր իւր սկսած գործը, սպասելով հարուստ վարձատրութեան, որ նորան խոստացել էր սուլթանն։

Բայց դժբախտ ծերունուն չէր վիճակուել հանգիստ վախճան ունենալ։

Անցան 12 տարի. եւ Մահմուդը հրամայեց ուղարկել քերթողին մի փղաբեռ ոսկի։ Սորա դէմ բողոքեց Հասանը, պարսաւելով իւր տերոջ առատաձեռնութիւնն. Ֆիրդուսիին ուղարկուեցաւ միայն 60,000 հատ արծաթ նորա ընկեր Այազի ձեռամբ։ Աւանդութիւնն պատմում է, որ Ֆիրդուսին, իրան անպատուած զգալով, մի մասն տալիս է բաղանիքի տիրոջըն (նա այդ ժամանակ բաղանիքումն էր), միւս մասն ֆուկայ (գարեջուր) ծախողին (3), իսկ երրորդն՝ Այազին, խնդրելով սորան կրկին ներկայանալ սուլթանին եւ յայտնել այս անախորժ թիւրիմացութեան մասին։ Հասան շտապեց համոզել Մահմուդին, ասելով, որ Ֆիրդուսին կարմաթների (4) աղանդին է պատկանում. նոյն օրն յայտնի եղաւ քերթողին, որ վաղը սուլթանը նորան, իբրեւ կարմաթի, փղի ոտերի տակ է նետելու։ Անհանգիստ գշերից յետոյ Ֆիրդուսին հետեւեալ առաւօտ սպասեց պարտիզում սուլթանի դուրս գալուն, ընկաւ նորա ոտերն, աղերսելով ականջ չ'դնել իւր հակառակորդների բանսարկութեանց. բայց Մահմուդն մնաց խուլ նորա աղաչանաց։

Ցուսահատ ծերունին շտապեց տուն, հաւաքեց մի քանի հազար տող ոտանաւոր, որ դեռ չէին արտագրուած ուրիշներից, եւ ամբողջապէս այրեց. ապա կոչեց Այազին եւ տուեց մի կնքած ծրար, խնդրելով 20 օրից յետ սուլթանին հասուցանել, իսկ ինքն ծպտեալ դէրվիշի շորերով հեռացաւ քաղաքից (5)։

---

(1) Mohl, Préface XXVII-XXVIII.
(2) Ըստ այլոց, Հասան, հակառակն, քերթողի պաշտպանն էր։
(3) Այս աւանդութիւնն անկասկած հիմնւում Ֆ. երգիծաբանութեան վերայ։
(4) Սոքա մեկնում էին Ղորանը այլաբանօրէն։
(5) Աւանդութիւնն աւելացնում է, որ Ֆիրդուսին, նախ քան քա-

*Այդպէս ճշտութեամբ կատարեց իւր ընկերոջ պատուէրն, ամենեւին կասկած չ'տանելով Թղթի բովանդակութեան մասին. սա մի կծու երգիծաբանութիւն էր, որով վշտացած քերթողն յանդիմանում էր Մահմուդի ապերախտութիւնն. «մինչդեռ ես շարունակ 30 տարի աշխատում էի «Արքայից գրքի» բանաստեղծութեան վերայ, յուսալով, որ իմ տէրը ինձ առատ կ'վարձատրէ եւ մեծամեծների գլուխը կ'անցկացնէ, նա տուեց ինձ միայն մի բաժակ գարեջրի գին»։ Գրգռուած ծերունին անւանում է Մահմուդին անհաւատ, անօրէն, արքայական բնաւորութիւնից զուրկ, արժանի գեհենի կրակին։*

*Ապա Ֆիրդուսուն մենք տեսնում ենք Կաբուլի (Մազանդարանի տիրոջ) մօտ. Կաբուլ նորան ընդունեց սիրով, բայց իմանալով նորա փախստեան պատճառը, քաղաքական հանգամանքներից ստիպուած խնդրեց իւր հիւրին ուրիշ հովանաւոր իրան պտռել։*

*Այստեղից Ֆիրդուսին եկաւ Բաղդադ եւ շնորհիւ մի հարուստ վաճառականի ներկայացաւ վէզիրին եւ ապա Կադր Բիլլահ խալիֆին, որի մօտ գտաւ ժամանակաւոր հիւրընկալութիւն. այստեղ նա գրեց իւր յայտնի «Յուսուֆ եւ Զուլէյխան», այս անգամ նիւթ ընտրելով, խալիֆին հաճոյանալու համար, Ղօրանին մօտ առարկայ։*

*Զայրացած Մահմուդը դեռ շարունակում էր ամեն տեղ որոնել յանդուգն քերթողին։ Իմանալով նորան Բաղդադեան տեղը, նա կտրուկ կերպով պահանջեց խալիֆից փախստականին. Ֆիրդուսին շտապեց մեկնել Ահվազ (որի կառավարչին նա նուիրեց իւր նոր վէպը), այստեղից եկաւ Կուհիստան, որի տէրը՝ Նասիր Լէկ՝ ինքն անձամբ ընդառաջ եկաւ եւ մեծ շքով ընդունեց նորան։ Լինելով սուլթանի մօտ բարեկամը, նա տուեց Ֆիրդուսուն 100,000 արծաթ, աղաչելով այլ եւս ոչ գրել, ոչ խօսել իւր տիրոջ դէմ։ Ապա նա գրեց Մահմուդին մի նամակ, արդարացնելով Ֆիրդուսու կծու տողերը նորա կրած տառապանքներով եւ սուլթանի անարդար վարմունքով, եւ խնդրում էր մոռանալ իւր բարկութիւնը։ Այս դէպքից օգտուեցին քերթողի բարեկամներն եւ բաց արին սուլթանի առաջեւ պալատականների խարդաւանքն եւ չար նախանձը դէպի իւր վաղեմի սիրելին։ Մահմուդը հրամայեց մահի դատապարտել Հասանին։*

*Վերջապէս երկար անհանգիստ թափառելուց յետոյ Ֆիրդուսին վերադարձաւ իւր հայրենի քաղաքն։ Մի օր շուկայում զբօսնելիս նորա ականջին հասաւ իւր երգիծաբանութեան հետեւեալ տողերն, որ երգում էր մի երեխայ՝*

---

*ղարից հեռանալն, Ղազնինի մզկիթի պատի վերայ, որտեղ սովորաբար կանգնում էր Մահմուդը, գրեց իւր ձեռամբ հետեւեալ տողերն.*

*«Զաբուլիստանի տէր Մահմուդի բաղդաւոր դուռը նման է ծովի, «եւ ո՛րպիսի ծովի. որի ափը չի երեւում. եթէ ես ջրի տակն եմ լողում, «առանց այնտեղ մարգարիտներ գտնելու, սա իմ աստղի, ոչ թէ ծովի, «սխալանքն է»։*

«Եթէ թագաւորի հայրը լինէր թագաւոր, (1)
«Նորա որդին գլուխս ոսկի թագով պիտի պսակէր»։

Նա արձակեց ճիչ եւ ուշագնաց ընկաւ. հազիւ տուն տարան նորան, արդէն հոգին աւանդեց 83 ամեայ ծերունին։

Այս տխուր բօթն աւելի եւս խորն ապաւորելու համար աւանդութիւնն աւելացնում է հետեւեալն. նոյն այս ժամանակ Մահմուդ համաձայն իւր խոստման, ուղարկում է 100,000 ոսկի եւ թանկագին զգեստ «Շահնամէի» հեղինակին. բայց մինչ պատուախումբը ներս էր մտնում քաղաքի մի դռնից, միւսից դուրս էին տանում Ֆիրդուսու անշունչ մարմինը, որ եւ ամփոփեցին մի պարտիզում։

Հանգուցեալի դուստրը հրաժարուեց գանձերից, իսկ նորա քոյրն այդ գումարով շինել տուեց Թուս գետի վերայ մի քարեայ ամբարտակ (digue), որի մնացորդները մինչեւ այժմ դեռ նկատելի են։



## Դ· ՇԱՀՆԱՄԷԻ ՀԱՄԱՌՕՏ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆԸ

Ֆիրդուսին սկսում է իւր վէպն պարսից հնագոյն արքաներից, որոնցից առաջին տեղը բռնում է Կայումորդ. ապա նորան հետեւաբար յաջորդում են Հուշենգ, դիւամարտիկ Տահմուրազ եւ Ջամշիդ։ Վիշապազլուխ Զոհակի անկումը Հրուդենի ձեռքից պատկանում է քերթողի ամենաշնորհալի տողերին։ Հրուդենի Տուր եւ Սալմ որդիքը սպանում են իրանց հարազատ եղբայր Երաջին, որից առաջ է գալիս Իրանի եւ Տուրանի մէջ թշնամութիւն։ Երաջի մահուան վրէժն առնում է նորա որդի Մանուչիրը։ Սորա ժամանակ հանդէս է գալիս Սամը, ապա նորա որդի Զալը, որ սիրահարւում է Ռոթաբէի վերայ եւ պսակւում նորա հետ. սորա ժամանակ է տեսնում իւր առաջին հռչակը Ռուստամ։ Մանուչիրի յաջորդ Նաւդարի սպանումն Աֆրասիաբի (Տուրանի թագաւորի) ձեռքից կրկին տեղիք է տալիս Տուրանի հետ պատերազմի։

Կաոսի ժամանակ Ռուստամ կատարում է իւր ամենամեծ նահատակութիւնները. Նորա սիրահարական արկածը Սամենգանի արքայադստեր հետ, Զոհրաբի ծնունդն, հօր հետ տարաբախտ պատահելն եւ մահը նմանապէս պատկանում են այս շրջանին։

Կաոս, գահ բարձրանալով, հակառակ Զալի նախազգուշութեանց, արշաւում է Մազանդարանի վերայ, որ հռչակուած էր իւր գեղեցկու-

(1) Ակնարկ, որ Մահմուդի հայրը ծննդեամբ ստրուկ էր Նուհ Սամանիի ժամանակ։

թեամբ։ Սպիտակ Դեւը գերում է Թագաւորին եւ բերում Մազանդա-րանի տիրոջ մօտ, որ հրամայում է կապանքների մէջ գնել նորան։ Ռուստամ շտապում է օգնութեան, մտնելով Մազանդարան. նա գործում է մի շարք հերոսագործութիւններ (1), սպանելով վիշապին, կախարդ կնոջը, Առժանգ Դեւին եւ վերջապէս Սպիտակ Դեւին, որ նորա ամե-նափառաւոր գործն է համարւում։ — Միւս անգամ Կաւոս գերւում է Հա-մաւերանի Թագաւորից եւ դարձեալ ազատութիւն գտնում իւր հաւատարիմ փահլեւանի շնորհիւ։ — Սիաւուշ, Կաւոսի որդին, իւր հօր հետ ունե-ցած անբաւականութեան պատճառով ապաւինում է Աֆրասիաբի մօտ, որ նորան սպանել է տալիս։ Այս ոճրից նորից ծագած պատերազմը յաղթանակով վերջացնում է Կէյ Խոսրով, Սիաւուշի որդին, որին յաջողում է փախչել Տուրանից։ Աֆրասիաբին բռնում են եւ իւր Թա-գաւեան անդում խողխողում։ Բէժանի եւ Մենիժէի (2) սիրա-հարա՛յան միջադէպը մի փոքր զարդարում է այս արիւնահեղ պատե-րազմների միանւագ պատկերն։

Լոհրասպի հետ գահ է բարձրանում կողմնակի արիւնը։ Վըշ-տասպ (Գուշտասպ), դժգոհ իւր հօր խիստ վարմունքից, փախչում է «կայսեր քաղաքը», ուրտեղ երկար ժամանակ Թափառում է Ֆառուխ-զադ կեղծանունով։ Հերոսի վերայ սիրահարւում է արքայադուստր Կի-տաբուն եւ պսակւում նորա հետ։ Վշտասպ հնազանդեցնում է կայ-սեր հարկատու ազգերն եւ իւր քաջութեամբ գրաւում բոլորի յարգան-քը։ Կայսրը հարկ է պահանջում Լոհրասպից. Զերիր (Վշտասպի եղ-բայրը) զօրքով դիմում է Ցունաց վերայ եւ պատրաստւում ճակատելու. կայսրը ուղարկում է հերոսին Թշնամու դէմ, որին իսկոյն ճանաչում են զօրքերն եւ ոտի կանգնում, իսկ Զերիր տալիս է նորան արքայա-կան Թագն, նստացնում հօր գահի վերայ եւ բերում իրան կնոջ հետ. Լոհրասպ հրաժարւում է Թագաւորելուց եւ հեռանում Բալխ։

---

(1) Այս երկիրն, որի անունն հանդէս է գալիս եւ Աւեստայում, (Mâzainya Daêva), իւր լեռներով եւ անտառներով հեշտիւ կարող էր պարսիկներին «չար ոգիների» հայրենիք թւել։ Հաւանական է, որ սա համապատասխան է մեր ժողովրդական զրոյցների «Դեւստանին»։

(2) Բէժանի անունը պատուաւոր տեղ է բռնում պարսից դիւ-ցազնական վէպում. Ֆիրդուսին անւանում է նորան Գիվ փահլեւանի որդին եւ Գոդարզի Թոռն, որ Կէյ Խոսրովի հրամանով սպանում է բազ-մաթիւ վարազներ Իրանի սահմանագլխում. նորա վերա սիրահարւում է գեղեցկուհի Մենիժէն, Աֆրասիաբի դուստրը, եւ պահում իւր մօտ. ան-պատուած հայրը քցել է տալիս հերոսին հորի մէջ, իսկ դստերն արտաք-սում տանից։ Մենիժէն, չկամենալով բաժանուել իւր սիրելիից, նստում է հորի մօտ եւ ողորմութիւն հաւաքում նորա համար։ Ռուստամ վաճա-ռականի զգեստով գալիս է Տուրան, գտնում Բէժանին եւ տուն բերում Մենիժէի հետ։ — Այս հերոսի անունն տարածուած է եւ Կովկասի ցեղերի մէջ՝ Սվանետների (Բէժան), Օսետների (Բէզան), յիշւում է եւ մեր ժո-ղովրդական վէպում («Բեռի Բէջան»)։

Վշտասպի ժամանակ Զրադաշտ բերում է իւր կրօնը. բարեպաշտ արքան ուղարկում է Իսֆենդիարին (որին խոստացել է իւր գահը) ամեն տեղ տարածելու այդ կրօնը. հերոսին բամբասում են հօր մօտ, իբր նա մտածում է գահը նորանից խլելու. բարկացած Վշտասպ հրամայում է որդուն երկաթի կապանքների մէջ դնել և պահել ամրոցում: Նոր կրօնը պատճառ է դառնում Տուրանի և Իրանի մէջ պատերազմի. Արջասպ յարձակւում է Բալխի վերայ, սպանում Լոհրասպին, նոյն իսկ Իրանի տիրոջը սաստիկ նեղում. յուսահատ արքան ուղարկում է մի ոմն Ջամասպի օգնութեան կոչելու իւր որդուն. Ջամասպ պատմում է հերոսին Լոհրասպի մահը, նորա քոյրերի գերութիւնը և այն վտանգը, որ սպառնում է նորա հօրը. Իսֆենդիար մնում է խուլ նորա բոլոր աղաչանաց: Բայց երբ նա լսում է, որ իւր եղբայր Ֆերշիդվեր մահամերձ վիրաւոր է, հրամայում է հանել իւր երկաթները և շտապում ճակատամարտ: Սպանելով Արջասպին և արտաքսելով թշնամուն երկրից, Իսֆենդիար յիշեցնում է հօրը նորա խոստման մասին. Վշտասպ երդւում է նորան տալ իւր գահը, եթէ նա ողջանդամ գերի բերէ գոռոզ Ռուստամին: Հերոսը ակամայ ճանապարհ է ընկնում, յաւ. իմանալով. ում հետ գործ ունի: Իբրեւ ծերունի փառաւոր զգուշացնում է երիտասարդ հակառակորդին՝ չեղ կենալ անհաւասար կռւից, մի առ մի թւելով իւր կատարած գործերը. Իսֆենդիար պահանջում է անձնատուր լինել և թոյլ տալ իրան ձեռ ու ոտ կապած տանել թագաւորի մօտ: Կռիւը անխուսափելի է դառնում, Իրանի երկու հռչակաւոր փահլեւանների ճակատը տեւում է մի քանի օր. Ռուստամ, սաստիկ նեղուած, խնդրում է հօրից խորհուրդ. Զալ դիմում է Զմրուխտ (Սիմուրգ) (1) թռչունի օգնութեանը, որ շտապով գալիս է «ծովի ափից», բուժում հերոսի և Ռախշի վէրքերը և սովորեցնում նորան արքայազն փահլեւանին սպանելու միակ միջոցը՝ կախարդական նետերի շնորհիւ. Ռուստամ սպանում է Իսֆենդիարին, հարուածելով նորա աչքը, բայց և ինքն շուտով ընկնում է իւր խորթ եղբօր ձեռից (2):

---

(1) Սիմուրգ՝ Իրանի հնագոյն հեթանոսական կրօնի պաշտելի թռչունն է, որ հովանաւորում է Զալի ցեղին:

(2) Հետաքրքիր է, ինչ հանգամանքներում է մեռնում այս անյաղթ հերոսը: Զալին նորա ստրկուհին ծնում է մի որդի «լուսնից աւելի փայլուն». Զալ կոչում է աստղագէտներին, որոնք յայտնում են, թէ «նա (նորածինը) ոչնչացնելու է Սամի ցեղն և վիշտ տարածելու ամբողջ Սէյիստանում»: Զալն ուղարկում է Շեղադին Կաբուլի թագաւորի մօտ սնուցանելու, որ ապա պսակում է նորան իւր դստեր հետ:

Շեղադին հանգիստ չի տալիս Ռուստամի համբաւն. խորհուրդ անելով իւր խնամակալի հետ և դտնելով նորան համախոհ իւր չար դիտաւորութեանց, նա յանկարծ մի օր, իբրև թէ անպատուած թագաւորից, հեռանում է նորա մօտից և վերադառնում իւր հօր քաղաքը: Ռուստամ, բարկացած, զօրք է հաւաքում եղբօր վրէժը առնե-

Դարեհի պատմութիւնն ամբողջապէս հիմնուած է Pseudokallisthen'ի վերայ· չ'նայելով, որ Իսկանդար (Աղէքսանդր Մեծն) պարսիկներին «չար իշխան» պէտք է թւէր, որ նուաճեց ամբողջ Իրանը եւ խլեց նորա ազատութիւնն, բայց Ֆիրդուսին չէ թաքցնում իւր համակրութիւնն դէպի ազնիւ աշխարհակալն։ Արտաշիրից սկսում է պատմական մասն, բայց դեռ լի բազմաթիւ առասպելներով· սորան հետեւում են մի շարք թագաւորներ, որոնց վերայ երբեմն երկար կանգ է առնում քերթողն (Շապուհ Ա, Յազկերտ Բ· Զար, Վռամ Գոր, Խոսրով Պարվիզ, Կոբադ, Յազկերտ Գ.)։ Խոսրով Պարվիզի ժամանակ հանդէս է գալիս ապըստամբ Վ ռ ա մ  Չ ո բ ի ն, իբրեւ առասպելական հերոս, որ հռչակւում է իւր յաղթականութիւններով· նա մեծ է մարմնով եւ սաստիկ ուժեղ, բայց չափազանց հպարտանալու պատճառաւ ընկնում է մահի գերանդիի տակ (ինչպէս առաջ Ոլեաստոդորն)։

Վախճանում տեղի ունեցած անբախտ ճակատամարտն. Յազկերտ Գ.-ի փախուստը եւ մահը կազմում են վէպի վերջաբանը։

Բերլին 1901, 10 Յուլիսի։

Յ · Գ · — Այստեղ զետեղում ենք մի քանի հայ-պարսկական բառեր որոնք գտնւում են Շահնամէում։ Ի հարկէ դուրս ենք թողնում այն բառերը որոնք արդէն յայտնի են· — 1) Խանդիդան = խնդ-ալ· 2) Խուրդան = կուր (կերա-կուր)· 3) Դայեակ = (սնուող) դայեա-կ· 4) Սուգ=սուգ· 5) Սուգաւար=(տխուր) սգալին, սգաւոր· 6) Մարդ = մարդ· 7) Նիշասան = նշանել։

---

լու համար· Շեղադ նկատում է, որ մեծ բազմութեան կարիք չկայ, հերոսի անունն միայն բաւական է, սարսափ տարածելու Կաբուլի վերայ։ Ռուստամ, համոզուելով, 100 հեծելազօրով գնում է Շեղադի հետ Կաբուլ։ Թագաւորն գլխաբաց եւ ոտաբոբիկ ընդառաջ է գալիս եւ աղաչում խընդրել նորան· Ռուստամ ներում է։ Հրապուրուած Կաբուլի տիրոջ պատւութիւնից, հերոսն ցանկանում է անպատճառ այցելել այն որսի տեղըն, որ հռչակուած է իւր պտղեցկութեամբ։ Որսալիս, նորա մարդիկն ցրւում են· Ռախշն, զգալով դարանն, յանկարծ կանգ է առնում· բարկացած Ռուստամը մտրակում է նժոյգը եւ գլորւում նորա հետ միասին փոսի մէջ, որ լի էր զանազան սուր զէնքերով։ Կիսամահ հերոսն խընդրում է եղբօրն նորան տալ իւր աղեղն եւ երկու նետ, որպէս զի գազանի ճարակ չ'դառնայ· Շեղադ ուրախ ուրախ կատարում է նորա խնդիրը· Ռուստամ նետահար է անում նորան եւ ինքն եւս հոգին աւանդում։

Իւր հօր արիւնալի վրէժն առնում է Ֆարամուրզ։





*Բարսեղ Ցարութիւնեան* (Ապարանի Թաքարլը գիւղից) 55 տարեկան, բարձրահասակ, սպիտակամօրուք ծերունի է. արհեստով՝ հողագործ։ Պատմում է բաւական վարժ, առանց երկար կանգ առնելու, տեղ տեղ ոգեւորուած, լինելով այս փոքրիկ գիւղի (25 տուն) միակ «ըստաղը» հարկաւ նա միշտ թարմ է պահում իւր յիշողութիւնն։ Նորա պատմելու եղանակն մեծ առաւելութիւն ունի միւս ապարանցիների վերայ, որոնց ոճն արհեստական բաւական կոշտուկոպիտ է։ Բուրզէի զրոյցն նա լսել է հարեւան Ղարաբուլաղ գիւղի բնակչից։

# ԲՈՒՐԶԷ

## Ա.

Աւալ ժամանակ Սասունմայ քաղաք Ձալ Թագաւոր կ՚տիրէր։ Էդ Թագաւոր էնպէս զօռբայ էր, որ մինչեւ անգամ դշերն էլ, ձկներն էլ վերգի (1) կ՚տային։ Ձալ Թագաւորին կէր մէկ աղբէր, անուն Դաւիթ։ Փոլադի Դարբանդից (2) Դաւթից սաւայի (3) մարդ չէր կանէր բերէր խարջ (1)։

Դաւիթ ունէր մէկ տղայ, անունը Բուրզէ։ Էղաւ որ Դաւիթ յրնկաւ մեռաւ. Փոլադի Դարբանդ մնաց Թարխան (4)։

Մէկ օր Ձալ Թագաւոր գնացեր էր գալլաք-խանէն (5) Թրաշ կըլնէր. տեսաւ որ Բուրզէն հօրօղբօր Ցոլանի փէշից բռնած ման էր գալի. Ձալ Թագաւորի օր աչք Բուրզուն առաւ, էնպէս մէկ ա՛խմ քաշեց, որ դու պրծար։ Բուրզէն ըսաւ՝

— Թա՛գաւոր, իմ կենաց ժամանակ դու ընչի՞ պիտի ա՛խ քաշես։

Ասաց — Ո՛րդի, աչքս առաւ քեզի, խէրդ յընկաւ միտս։ Փոլադի Դարբանդ իրեք հարուր վաթսունը վեց տուն այ, քո հօրից սաւայի մէկը չէր կանի վերգի առնէր։ Հիմի օր քեզի տեսայ, ցաւս ընձի յարարատ աւեց (6)։

---

(1) Հարկ։ — (2) Փոլադ (պարսկ.) = պողպատ. Դարբանդ (պարսկ.) = փակւած, արգելուած։ — (3) Բացի։ — (4) Ազատ։ — (5) Սափրատուն։ — (6) Ջգայի եղաւ։

Բուրզէն ասաց՝ — Ջունքի էգպէս այ, ես գնացի Փոլադի Դարբանդ խարջ բերեցի։

Ասաց — Ո՛րդի, դու հլա (1) տղայ ես, դու չես կարայ բերէ։

Ասաց — Թա՛գաւոր․ պտի էրթամ, թէ չէրթամ, պտի չաթլամիշ էղնիմ (2)։

Թագաւոր ղանչել տուեց ղարղւանչուն (3)։ Առան էկան։

— Գնա՛, ասաց, ղուռը բա՛ց․ Դուլթի գուրզ նեգսեւ այ, տա՛ւ տղին տեսնինք կանա՞յ յիրար տայ (4)։

Ամա գուրզն տասնըհինգ փութ փողպատից շինած էր։

Որ գուրզ ուեցին տղին, էնպէս վերցուց, որ նշխած խնձօրի ղայ-տայ (5)։

Ջալ Թագաւոր կանչեց Դուլթի գեամըչուն (6), չունքի Սասունայ քաղքի Փոլադայ Դարբանդի արանքը ովկիանոս ծով կար։ Թագաւոր ըսաւ գեամըչուն՝

— Գեա՛մըչի, պատրաստութիւն տես, որ Բուրզուն տանես Փոլադայ Դարբանդ։

## Բ․

Մենք խաբար ո՞րտեղից տանք՝
Փոլադի Դարբանդից։

Փոլադայ Դարբանդու կար մէկ փահլեւան (7) դեւ։ Էս Դեւն էլ գըլչեր ցերեկ ղարբ վըէն կայնէր էր ու սէյր կէնէր (8) գեամուն, միտք կէնէր՝ քանի օր էս գեամին չէ էկէ դըա Փոլադայ Դարբանդ, աշխարքի մէջ կայ խէր-խաղաղութիւն։ Եթոր թէ էկաւ, ալակոծում կընկնի աշխարք, ես կուիրուի ես կը չիքուի։

Մէկէլ տեսաւ օր գեամին տեղէն յիրար էկաւ (9) ու կուգայ դէբայ Փոլադայ Դարբանդին։ Դեւն ասաց՝

— Էսի Սասմայ ծառրուց այ էկաւ։

Դեւ սէհրբազ էր (10)․ գնաց ծովի վըայ յառէջ։ Գեամըչին ըսաւ՝

— Բու՛րզէ, էս գալողն փահլէւան դեւն է։

Բուրզէն ասաց՝

— Գեա՛մըչի, Աստու խալալը ընձի խարամ ըլնի․ գեամին էնպէս քշես, որ դեւի ճակտի մէջտեղէն ընցուս։ Որ էնպէս չ'քշես, յառաջի գուրզը վըր քու գլխու՞ կը զանեմ։

Գեամըչուն էնպէս երկիւղ կոխեց, որ գեամըչու մութ ճըղուեր

---

(1) Դեռ։ — (2) Ճաքիմ։ — (3) Դռնապան (պարսկ.)։ — (4) Շարժէ։ — (5) Պէս։ — (6) Նաւապետ։ — (7) Տե՛ս բառիս մեկնութիւնն իմ «Թըլօր Դուլթում»-Առաջաբան։ — (8) Կ'նայէր։ — (9) Շարժւեցաւ։ — (10) Հըննարագէտ։

էր, արուն գըլգըր գըլգըր ճաթից կ'թափէր։ Դևամըշին գեամու դիւզ-գիւններ ձորվից, օր պտի գեամին գեւի ճակտի մէջտեղով ընցնէր։ Մուխանաթ (1) գեւ ուրիշ դրաղ տուեց. Բուրղէն մէ զուրղ գեւի գլխու վրէն զարկեց ու գլօխ հարալամիշ էլաւ. գեւի յուշ գնաց։ Բուրղէն ձեռ քցեց գեւի յանկած, վերուց դրեց մէջ գեամուն։ Ու քշեցին Փոլադայ Դարբանդուց դուս յէլան։

Էն ժամանակ մուխանաթութիւն չկար։

Դևուն յէլաւ էրկու սիպտակ ժանգառ չաղըր ղուրմիշ էրէց ծովի վրայ՝ մէկ իրան համար, մէկ Բուրղու. ապրեշումէ եորղան, դոշակ (*), դուշուկի (2) բարձեր, խորասանայ քէչայ, չայի փունջ, եմակ-իչմակ (3), թութուն-չըբուխ սարքեց։ Կերան, խմաւն, թեք յընկան քնան մինչեւ իրեք աւուր ժամանակ։

Իրեք օրն օր թըմմաւ, յէլան կայնան կախ։ Դևուն ասաց՝

— Բու՛րղէ, նօբաթով (4) կոխ էնենք։

Բուրղէն ասաց՝ — Էնենք։

Դևուն ասաց՝ — Ցառաջի նօբաթ քո՞նն այ թէ իմն այ։

Բուրղէն ասաց՝

— Առաջի նօբաթ տուր քեզի, չունքի դու անուանի փահլէվան ես։

Մէյդան բացին. իրեք անգամ Դեւ գըրզով զարկեց Բուրղուն, իրեք զուրղն էլ Բուրղէն ձեռով բռնեց։ Բուրղուն էնպէս մէկ հէբամ կոխեց օր բռաց՝ — Պահա՛, նօբաթ էս անգամ իմն այ։

Ու զարկեց Դեւին։ Զարկել պաշտան Դեւի գլօխ հարալամիշ էղաւ։ Դեւ թռաւ բանձրցաւ, մէկ խանչալ զարկեց Բուրղուն, էս կողքից մինչեւ էս կողք հարալամիշ էրեց։ Դեւ փախաւ, Բուրղէն տուեց յետեւ, չարեց քցեց Սողանլուայ մէջէն։ Դեւ իրա եարի կսկծուն գլօխ կոխեց բառ (5) ծառի ջաբէն (6). Բուրղէն իրա քամու հետ ընցաւ։

Օխտ օր գիշեր ցերեկ գնաց։ Խասաւ Օծմանղաղի թագաւորի սինոռ. մէկ յաղբրի վրայ կայնաւ. յաղբրից ջուր խմեց, եարէն պաղաւ, յընկաւ երեսի վրայ։ Ջուր փորի ակով կընցնէր ու կերթէր։

Օծմանղաղի թաղաւորի վազիր, վաքիլ, խան, բաղ, մուֆտի, սուլթան կուգան աւղուշի։ Վազիր տեսաւ օր ջուր կուգայ՝ արուն կուգայ. ասաց՝

— Մէկ քշէք տեսնենք էս ի՞նչ արուն այ էս ջրի հետ կուգայ։

Գնացին տեսան օր մէկ տղայ թինք բերնաւ վրէն յընկուկ այ. թիկընքի լէնք մէկ գեաղ այ. Ասաց՝

— Շրտկէք տեսնենք էս ի՞նչ մարդ այ։

Ու տառ խօգի թափան վրէն անջաղ անջաղ օր չըջին քամակի վրայ։

Վազիր տեսաւ օր էստուր յուշը գլխից գացեր այ, ասաց՝

---

(1) Խարդախ։ — (2) Թռչունի փետուրից։ — (3) Ուտելիք խմելիք։ — (4) Հերթով։ — (5) Փտած։ — (6) Ճեղք։

(*) Տեղատառ ռ-ն կարդալ՝ ֆր. eu.

— Իմ հապիկէն (1) բերէ՛ք։

Ու հապիկէն բերին․ չիչմ կար մէջ․ չչի խցանը ճխթեց չչի բերնի մէջ։ Վազիրն էլ հէքիմ այ․ դեղ քսեց բութ, տուեց եարին․ էն սհաթին Բուրդէն օյաղցաւ (2) նստաւ ու բռռաց՝

— Տուէ՛ք իմ խարջ։

Օր բռռաց՝ տուէք իմ խարջ, Նաֆաս (3) առաւ մարդկանից, գնացին գիրան ծառներին, մնան։ Վազիր քամակից ասաց՝

— Ի՞նչ խարջ այ կուզես։

Ասաց՝ — Էս ո՞րտեղն այ։

Ասաց՝ — Օծմանդաղի թագաւորի սինոռն այ։

Ասաց՝ — Ջունքի էնպէս այ, ես մեղայ Աստու․ ես գիտամ, թէ Փոլադի Դարբանդն այ։

Վազիրն ասաց՝

— Հա՛յ հա՛յ, Փոլադի Դարբանդ օխտ աւուր ճանապարհ մեզանից հեռու այ։

Վազիր մտածաւ, որ էս փահլէվան շատ դոչաղ փահլէվան այ։ Ասաց՝

— Անունդ ի՞նչ այ։

— Բուրդէ։

— Կ'խնդրեմ ընձի ղոնախ էլնես յէսօր։

— Լաւ, կեղնիմ։

Էն սհաթին յետակ (4) բերին, Բուրդէն նեծաւ․ էն վախտ որ հեծաւ, էնպէս զորեղ մարդ էր, կաթ կաթ ջուր ձիու պորտից կերթէր։

Գնացին աւղուչ էնելու վազիրի հետ։

Բուրդու հերս բռնեց, ձեռ թալեց մէկ գիւլլի դաղա՛ն (5) քաշեց քօքից դուս հանեց․ օխտը քօք կար վրէն, ամեն քօքի վրայ կար օխտը փութ խող․ դրեց թեւի վրէն ու քշեցին։

Գնացին Օծմանդաղի թագաւորի քաղաք։ Վազիր մտածեց՝ որ տանիմ մեր թագաւորին շանց տամ, վայ թէ թագաւոր երկուդ անայ ըստուց․ թէ շանց չիտամ, ուրիշ որ լսի, ընձնից գանգատ էնայ թէ՝ վազիր, մէկ փահլէվան իր գալ, ընչի՞ ընձի չասիր, ես էլ թամաշայ էնի։

Յետոյ վազիր մտածաւ՝ կերթամ թագաւորի պալատի ակով կընցնիմ ու կը մտնիմ պալատ, թէ՝ Թա՛գաւոր, մէկ մարդմ եմ գտէ, երկուղալի այ, չ'վախենաս․ թէ չես ուզէ, կ'տանիմ, իմ ղոնախն այ։

Գնաց մտաւ թագաւորի պալատ, ասաց՝

— Թա՛գաւոր, մէկ շատ դոչաղ մարդմ եմ գտէ։

Թագաւոր ասաց՝

— Վա՛զիր, բե տեսնենք ինչղ մարդ այ։

---

(1) Պարկ։ — (2) Սթափուեց։ — (3) Շունչ։ — (4) Ազատ ձի։ — (5) Մեծ ծառ։ Այստեղ ա'-ը կարդալ կոկորդից։

Ըսաց՝ — Բու՛րղէ, իջի ձիուց, էթանք Թագաւորի օթախ։

Իսկոյն յիջաւ ձիուց ու գնացին օթախ։ Թագաւոր աթոռ չանց տըւեց թէ՝ — Նստի՛ աթոռի վրայ։

Ու եբօր նստաւ, աթոռ տակ ջարդաւ։ Բերին քցին ապրըշումէ եօրղան դոշակ, ղուշտուկի բարձեր, խորըսանայ քէչէք։ Ու յընկաւ վըէն նստաւ։

Խաց, խորակ, չայ, փունջ, գինի, արաղ բերեցին կերցրեցին ու խմցրին մինչեւ լուսացաւ։ Լուսանալու ժամանակ Բուրղէն կանչեց վազիրին, ասաց՝

— Վա՛զիր, էրթանք աւղուշի։

Ու գնացին աւղուշ։

## Գ.

Մենք խաբար ո՞րտեղէն տանք՝
Ղարաղաղու Թագաւորից։

Օծմանդաղի Թագաւոր Ղարաղաղու Թագաւորին վերգի կ'տէր։

Այնան ժամանակի էրկու եասաուլ ճամբեց թէ՝ մեր խարջի վախտն ա, գնացէ՛ք Օծմանդաղի Թագաւորից մեր այնան խարջն առէք էկէ՛ք։

Ու խեծան ձիանք գնացին։

Գնացին Օծմանդաղի Թագաւորի մօտ թէ՝

— Թա՛գաւոր, պատրաստա՛ մեր Թագաւորի խարջ, մենք տանինք։

Թագաւոր ասաց՝

— Մէ քիչմ սաբր էրէք (1), մինչի վազիրը գայ աւղուշից, խազնի քալնիք վազիրի կուշտն ա. ձեր խարջ տամ, տարէք։

Իսկոյն տեսան օր գարգեանի չըրըղկոց յէլաւ. մէկ մարդմ էկաւ իրա տեղի վըէն նստաւ։

Եասաուլներ ըսին՝

— Թա՛գաւոր, կարելի ա, մեր խարջ պատրաստա՛, վազիրն էկաւ։

Բուրղէն գոռաց՝

— Ի՞նչ խարջ։

Ըսին՝ — Ա՛ղբէր, քեզ դեռբայ (2) ի՞նչ կայ։

Ասաց՝ — Էրթա՛նք դուս, ձեր խարջ տամ։

Ձեռ թալեց թեւերից բռնեց, քաշեց հանեց դուս։ Երեսուն էրկու տատամ քաշեց յամեն մէկին, ճխտեց ճակատներ, ասաց՝

— Էսի այնան խարջն ա, տարէ՛ք. գարնան էլ կուգաք կ'տանիք։

Ու էդ մարդիք եարալու դպա Ղարաղաղու Թագաւոր գնացին։

(1) Համբերէ՛ք։ — (2) Քեզ վերաբերեալ։

Ղարաղաղու թագաւոր տեսաւ՝ իրան եասաուլները էկան, ատըմնե-րը իրանց ճակատ չարուկ, բերան իրանց արընոտ։

Ասաց՝

— Էդ ի՞նչ բան այ էլէ ձեզի։

Եասաուլներ ըսին՝

— Տունդ քար քանդ ըլնի, թագաւորութին արժան այ Օձման-ղաղի թագաւորի փահլէվնին, որ կամենայ՝ էս սհաթին երկինք գետին կ'քանդայ․ քո թագաւորութեն զուր այ։

Ամա արի դու Ղարաղաղի թագաւորին մէկ հատ ղոչաղ փահլէվան կէր, անունը Ղ ա թ ր ա ն։

Թագաւոր վերցուց վաղեր վաքիլ, գնաց Ղաթրան փահլէվնի մօտ ու խնդրուաւ փահլէվնից, թէ՝

— Գիտես, իմ թագաւորութին քեզի այ։ Օձմանդաղի թագաւորի քաղքի մէջ մէկ հատ փահլէվան-այ փէյդայ էլէ (1) ու մեր ձիաւորներին սարալամիշ էրէ, չինէ այիբլու (2), ճամբէ էկան։ Էլ ընչի խամար_եմ ես քեզի պահէ, որ նեղ օր ընձի պէտք չ'գաս․ կ'խնդրեմ որ էրթաս, օխտ տարուայ խարջ, աղչիկն էլ բարաբար առնես ու գաս։

Դ․

Մենք խաբար ո՞րտեղէն տանք՝
Օձմանդաղի թագաւորի մօտէն։

Օձմանդաղի թագաւոր ասաց թէ՝

— Վա՛զիր, քու տունը քանդուի, էդ ի՞նչ օյին էր բերիր մեր գլօխ․ հիմայ Ղաթրան փահլէվան կուգայ, ի՞նչ պատասխան տանք Ղաթրան փահլէվնին։ Կանա՞ս, ասաց, իմ աղչիկ ուղես Բուրղէու համար որ սրտցաւանք ըլնի Ղաթրան փահլէվնի գալուն, մեզի պախպանայ։ Եթէ սրտցաւանք չըլնի, կ'թողայ կերթայ՝ Ղաթրան կուգայ մեզի բո-լոր կ'սպանայ։

Վազիրն ասաց՝

— Թա՛գաւոր, կայնի տեսնանք կարա՞մ ուղեմ թէ չէ։

Ամա դու մի ասէ՝ թագաւորի աղչիկ քաղքից էրկու վերստ հեռու մէկ օթախ չինէ, մէջը կը մնէր։ Վազիրն յէլաւ գնաց գպա աղչիկ, ասաց՝

— Թա՛գաւորի աղչիկ, յէլի բա՛ժնայ խայլին (3) դի՛ր ու կայնի դէմ, չարխ-դուղանը (4) տեղ բեր, որ Բուրղէն բերեմ քեզի խաւնի, քեզի սամ Բուրղէին։

---

(1) Ցոյանուել։ — (2) Այլանդակ։ — (3) Մեծ հայելի ամբողջ հա-սակը տեսնելու համար։ — (4) Զարդարանք։

Իսկ էն սհաթին Թագաւորի աղջկայ բերնի ջուր գունդ գունդ թափաւ ու յէլաւ կայնաւ թա՛ժնայ հայլու յառէջ առաւօտէ մինչև յիրիկուն. անջաղ օր չաքան-դուզան տեղ բերեց, յէլաւ կայնաւ դուռ, կիրիչկէր Բուրղէու ճամբէն։

Վաղիրն գնաց Բուրղէուն ասաց թէ՝

— Բու՛րղէ, Երթանք Թագաւորի աղջիկ տե՛ս կը խաւնի՞ս՝ ու-գենք քեզի համար։

Ու իսկոյն Բուրղէն ու վաղիր գացին. հալա դեռ էրկու վերստ հեռու էր Բուրղէն ասաց՝

— Է՛յ հա՛ այ Թագաւորի աղջիկ։

Ասաց՝ — էն այ։

Ասաց՝ — կառնիմ, դարձի՛։

Դարձան էկան քաղաք։

Թագաւոր ասաց՝

— Վա՛ղիր, ի՞նչ էրիր, ուզի՞ր աղջիկ թէ չէ՝ չէ։

Ասաց՝ — Թա՛գաւոր էրկու վերստ հեռու էր՝ ասաց՝ կառնիմ. չեմ դիտայ՝ կառնի՞ թէ չ՛ա՛ռնի։

Ու խեծան ձիանք Բուրղէն ու վաղիր գացին ուզուչի։

Ե·

Մենք խաբար ո՞րտեղէն առնք՝
Ղարադաղի Թագաւորի Ղաթրան փահլէվնեց։

Բերեցին մէկ հատ ֆայթօն, քառն խինգ ձի լծուած, քառասուն խոգի յընկան Ղաթրան փահլէվնի զօլթուղներուց ու բերին ֆայթօնի մէջ դրին, յընկան ճամբէն։ Սազով, սոզբաթով (1), Թագաւորով, վաղիրով տայրան քաղաքից դուս խանեին։

Թագաւոր խնդրուաւ թէ՝

— Ղա՛թրան փահլէվան, կը խնդրեմ օխտ տարուան խարջ, աղջիկն էլ հետ բարարար վերցուս ու գաս։

Թագաւոր դարձաւ, էս մարդ գնաց։

Շատ քիչ Աստուած խաբար ընի. խասաւ Օձմանդաղի Թագաւորի քաղաք։

Խաբար գնաց Օձմանդաղի Թագաւորին թէ՝

— Ի՞նչ կենես, քու տունը քանդաւի, Ղաթրան փահլէվան էկաւ. մեզ սաղ կ՚ջարդայ

Ու նրա՛նցից Օձմանդաղայ Թագաւոր գնաց յառէջ, ձեռ կապեց ու խոնդրուաւ, ասաց՝

(1) Պատրաստութիւններով։

— Ղաթրան փանլէվան, դու գիտես որ ես հարուր տարի ձեզի վերգի ուող եմ։ Հիմայ մէկ փանլէվան այ փէյդայ էղէ իմ քաղքի մէջ, ինչ արաւ՝ էն արաւ, ես մեղաւոր չեմ էդ բանի համար։

Ղաթրան փանլէվան հերսոտաւ, մաս թափ տուեց վերէն, ասաց՝

— Քեզ էլ քու փանլէվանն էլ լաւ մարդ կ'չինեմ։

Էն սհաթին դողացին Թագաւորի չոքեր թէ՝ աջայիբ պտի ընձի սպանայ թէ չէ։

Ու գնացին Թագաւորի պալատ ներս մտան․ քառսուն հոգի յըն-կան Ղաթրան փանլէվնի ընթի տկներ, վերցրին տարան օթախի մէջ․ ապրըշումէ եօրղան տոշակ, ղուշտուկի բարձեր, խորըանայ քէչէք քը-ցին, նըստուցին վրէն։

Ղաթրան փանլէվան ասաց՝

— Դէ՛, Թա՛գաւոր, խարջ պատրաստա՛։

Թագաւոր ասաց՝

— Կը խնդրեմ, Ղաթրան փանլէվան, կը համբերես մինչեւ վաղի-րը գայ, խաղնի բալնսներ վաղիրի կուչան այ, տամ՝ քո խարջ տար։

Հլայ կը զրուցին, մէկ էլ տեսան դարկեանհի չրըխկոցը յէլաւ․ Բուրղէն էկաւ, իրա տեղի վրէն նստաւ։ Ղաթրան փանլէվան մտածեց՝ չըլնի՞ էս ըլնի ըստոնց փանլէվան։

Ասաց՝ — Դէ՛, Թա՛գաւոր, խա՛րջ։

Որ խարջի անուն լսաւ Բուրղէն, հերսոտաւ, բեչեր գոմշի կոտչի պէս կայնան, ասաց՝

— Ի՞նչ խարջ այ դուղես։

Ասաց՝ — Քէ գեօրայ ի՞նչ կայ։

Ասել բանին հասան յիրար օթախի մէջ․ էլ աթոռ չը մնաց, չու-չայ չը մնաց՝ բոլոր կոտորեցին կաւու մէջ։ Ցետոյ էլ Բուրղէն չատ հեր-սոտաւ, մէկ բռուաց — օթախի փետեր էնպէս թռան, որ մէկ մախալ խող գլխըվեր չեկաւ։

Տեսաւ որ՝ Ղաթրան փանլէվան Բուրղէու յընթէ տակ թուլցաւ․ մտաւ Բուրղէն Ղաթրան փանլէվնի տակ, ղարկեց գետին, գլօխը կըտ-րեց ու հերսոտ դուս յէլաւ։ Տեսաւ որ՝ փայթոնչին փախէ քաղքից հե-ռու կայնէ։

Բոռաց՝ յարի՛, չան որդի։

Էկաւ փայթօն կայնաւ օթախի դուռ։ Ձեռ թալեց Ղաթրան փան-լէվնի ոտից բռնեց, քըցեց փայթօնի մէջ, ասաց՝

— Էսի օխտ սարուայ խարջ։

Կտրած գլօխն էլ վրայ քցեց, ասաց՝

— Էս էլ Թագաւորի աղչիկ։

Փայթոնչին առաւ փախաւ դէպ իրանց քաղաք։

Որ հասաւ Ղարաղաղու Թագաւորի քաղաք, իսկ էն սհաթին Թա-

պատոր յելաւ սազով, դհոլով, զուռնով էկաւ Ղաթրան փաշլեվնի յառէջ. տեսաւ որ՝ Ղաթրան փաշլեվնի ջանդակ այ ֆայթօնի մէջ։

Ֆայթոնչուն ասաց՝

— Էդ ի՞նչ բան այ։

— Ի՞նչ բան, ասաց, յաղդուաւ, Բուրդէն էլ սպանեց։

Թագաւոր խանչեց վազիրը, վաքիլ, խան, բագ, բոլոր բերեց կայ-նըցրեց, ասաց՝

— Մեր թագաւորութեան խաթի մէջ էլաւ մէ անգամ. չուր մկայ ինչ որ կանէինք՝ Ղաթրան փաշլեվնի քամակով կանէինք։

Վազիրներ ասացին թէ՝

— Թա՛գաւոր, քեզի զօր ունես, թող էրա՛ քու զօրքեր, էրթանք Օծմանդաղայ թագաւորի վրայ։

## Զ.

Մենք խաբար ո՞րտեղէն տանք՝
Փոլադի Դարբանդուց։

Փոլադի Դարբանդու թագաւոր մոտածաւ տեսաւ որ՝ յէսօր քառ-սուն օր կայ իրա փաշլէվան դեւ չէ երեւացէ։ Ղանչեց վազիրներ ու ասաց՝

— Ցու՞ր այ մեր փաշլիվան դեւ։ Բալքի էղաւ օր Սասմայ փաշլէ-վաններուց մէկն էկաւ, մենք ինչ պատասխան տանք։

Բոլոր յերդում կերան թէ՝

— Թա՛գաւոր, քու գլուխ չառ ըլնի, մենք խաբար չունինք փաշ-լէվան դեւի մասէն։

Ասաց՝ — Էրա ո՞րն այ խաբար։

Ասին՝ — Մ ր ջ ա ն ա յ  Ջ ա ղ օ ն (*)։

Էս էլ դեւի կնիկն էր։

Թագաւոր ասաց՝

— Մրջանայ Ջաղօ, յո՞ւր այ մեր փաշլէվան-Դեւ։

Ասաց — Նո՞ր կը խարցուս փաշլէվան դեւին. հէ՛ն այ Սողանյուայ մէջէն գլուխ կոխէ բոթ ծառ. ուսեր այ գլուխ, բոթ ծառից դուս չի գայ։

Թագաւոր յելաւ տասներհինգ բալթաչի (1) դրկեց, ասաց՝

— Գնացէ՛ք ծառ ճղէք, գլուխ հանէք ու դեւ առէք էկէք։

Գացին ծառ ճղին ու առան էկան դեւին։

Թագաւոր ասաց՝

— Փա՛շլէվան, էդ ի՞նչ օյին էլէ քո գլուխ։

---

(*) Բարսեղի ասելով, դեւի կինը «չատ յիմաստուն սէհրբազ էր, եղունգ կիրիչկէր, ամէն բան կիմանար»։ — (1) Կացին ունեցող։

Դեւն ասաց՝

— Սասունմայ մէկ փահլէվան էկաւ, կռիւ արեցինք, զարկեց իմ գլօխ ճղեց, ես էլ տուի ընդուր եարալամիշ էրի. ես փախայ, էն լարեց ջուր Սողանլուայ մէչէն։ Ես իմ եարի կակծուն իմ գլօխ կոխի քոթ ծառ, էնի ընցաւ, էլ չեմ գիտէ գո՞ր այ թէ գոր չէ (1)։

Թագաւոր ասաց՝

— Ըսա ո՞րն այ խաբար, էն մարդ ո՞րտեղ պտի ըլնի։

Ասին — Թա՛գաւոր, Մրջանայ Ջաղօն այ խաբար։

Ու զանչեց Մրջանայ Ջաղօն, ասաց՝

— Մը՛րջանայ Ջաղօ, յո՞ր այ Սասմայ փահլէվան։

— Օձմանդաղի թագաւորի պալատի մէջ քնած այ։

Ձունքի կէս գիշեր էր։

Թագաւոր ասաց՝

Մը՛րջանայ Ջաղօ, մըտնիս տըրիս, էն փահլէվան քեզնից զուղեմ էս սհաթին։

Մրջանայ Ջաղօն ծափ տուեց ու գնաց (2)։

Գնաց Օձմանդաղի թագաւորի օթախի մէջ յիջաւ, տեսաւ օր՝ Բուրղէն քնած այ։

Ասաց — Բու՛րղէ.

Ասաց — Ջա՛նէ, Մրջանայ Ջաղօ.

— Էկեր եմ օր քեզի տանեմ։

Ասաց — Տանես կոյ կ'տանես։

Ասաց — Երթում կեր մէկ բանով, օր քեզի չ'տանեմ, թէ չէ կը տանեմ։ Թէ ընձի կ'սիրես՝ — չեմ տանէ, թէ չես սիրէ — կ'տանեմ։

Ասեց թէ՝ քե կ'սիրեմ։

Էն սհաթին Մրջանայ Ջաղօն յետ դարձաւ էկաւ Փոլադի Դարբանդ, Թագաւորի պալատի դուռ յիջաւ։ Տեսաւ օր՝ էնքան այ բազմութեն թափէ — էլ հատ հէսար (3) չ'կայ։ Ու ջալլադներ կայնած՝ էն կասայ՝ ես պտի վերցում գլօխ, էն կասայ՝ ես պտի վերցում։ Մէկէլ տեսան Մրջանայ Ջաղօն զարտակ էկաւ յիջաւ։

Թագաւոր հարցուց — Յու՞ր այ Բուրղէն։

Ասաց — Չ'կարացայ բերէի։

Ասաց — Ընչի՞։

Ասաց — Զօրքայ մարդ էր, ղվաթս չը յաղթ'ցի։

Փահլէվան գեւն էկաւ կայնաւ թագաւորի յառէջ, ասաց՝

— Թա՛գաւոր, կը խաբայ Մրջանայ Ջաղօն, ասէ՝ կսիրեմ քե, ընդուց չը բերէ։

Ամմայ ընդոնց ազգ սիրող-էրող չեն։

---

(1) Այնանց է թէ ոչ։ — (2) Բարոնէլի ասելով՝ Մ. Գ. օդի մէջով թըռչում էր։ — (3) Թիւ, համար։

Թագաւոր հերոստաւ Մրջանայ Ջաղօյի վերէն թէ՝ — Ձեմ գինա, մեռնիս-ապրիս, պտի բերես ։

Մրջանայ Ջաղօն ձափ առուեց ու գնաց ։

Գնաց Օսմանգաղի թագաւորի օթախ, քնած տեղ փաթըթեց եոր-ղան դօշկով, ըէչպայ կարպետով, զարկեց զոլթուղն ու բերեց Փոլադի Դարբանդի մէյդանի մէջ դրեց ։

Բուրղէն քնած էր․ հակռմայ քնուց յիմցաւ տեսաւ որ՝ Փոլադի Դարբանդին էկեր այ, բոլոր (1) թագմութեն էնպէս այ փաթթէ, որ զու պրծար ։ Հերոստաւ բռռաց՝

— Տուէ՛ք խարջ ։

Որ ասաց՝ տուէք խարջ․ ընդրայ նաֆասից բոլոր ռխաթ (2) թափան ծովի մէջ ։

Յետոյ զեւ խնդրուաւ թէ՝

— Թա՛գաւոր, տո՛ւ վերցնել ։

Թագաւոր ասաց ։

— Մը՛րջանայ Ջաղօ, որտեղէն բերեր ես, էնտեղ տա՛ր էլի ։

Մրջանայ Ջաղօն վերցուց տարաւ Օսմանգաղի թագաւորի պալատի մէջ դրեց ու յետ դարձաւ ։

## Է․

Մենք խաբար ո՞րտեղէն առնք՝
Ղարապաղու թագաւորի մօտէն ։

Ղարապաղու թագաւոր յէլաւ վերցուց թագուս դօշուն, էկաւ Օսմանգաղի թագաւորի քաղքի բոլոր բռնեց․ գիր դրեց թագաւորին թէ՝ Նա փանլէվանդ ճամբես դայ էստեղ կռիւ էնենք, եա չէ քաղաքդ կաւերեմ ։

Թագաւոր ղանչեց վազիրին, ասաց՝

— Վա՛զիր, կ'տեսնես էս թագմութեն, որ էկեր մեզի կռիւ կենայ․ հրայ մենք կռիւ էնող չենք, ի՞նչ էնենք ։

Ասաց՝ — Բուրղէուն ասա՛, տես ի՞նչ կասայ ։

Վազիր գնաց բռռաց՝

— Բու՛րղէ, զուս յէլի ։

Բուրղէն զուս յէլաւ ասաց՝

— Վա՛զիր, ի՞նչ այ ։

Ասաց — Կ'տեսնի՞ս էս թագմութեն ։

Ասաց — Հա՛յ հա՛յ հա՛յ, վա՛զիր էս ի՞նչ այ ։

Ասաց — Ըստանք էկած այ՝ թագաւորին սպանեն, ռխաթին էլ ըս-պանեն, քեզի էլ սպանեն ։

(1) Շուրջ ։ — (2) Ժողովուրդ ։

Ասաց — Վա՛զիր, քու Աստուածն որ կ'սիրես, մէ իմ ձին քաշա՛ դուս :

Ձին քաշեց դուս, խեծաւ, տասնըխինգ փթանոց գեորզ վերցրեց, ասաց՝

— Վա՛զիր. Աստուած կանչա՛ չ'փախնին. չուր փախակս պանիմ, չըլնի թէ մեռամ կարօտով :

Ու քշեց գնաց դպա ղօշուն, յէլաւ մէ բանձր դարի վրայ ու կայ-նաւ. տեսաւ որ՝ աստղունքին, քարին, թփին հէսաբ կայ, գալող ղօշու-նին հէսաբ չ'կայ :

— Է՛, որ մէկ չ'բռնամ, կը ճրղվիմ. մէ բռնամ՝ ջանիս հանգս-տութեն ըլնի :

Մէկ օր չ'բռնաց. տասվերկու դար քանդուաւ գըլխվեր էկաւ քա-րով ու թփով : Ղօշուն ջիմցաւ, թէ երկնուց գետնուց մարդ լցուա-վըէներ, սկսեցին յիրար ջարդել : Բոլորը կոտորվան, մնացին թագաւոր ու վազիր՝ փախան գնացին :

Բուրդէն յետ դարձաւ էկաւ քաղաք, ասաց՝

— Վա՛զիր, էդ էր քու մարդիկ, որ պտի մեզի ջարդէին :

Էն սհաթին դուս թափան տեսան՝ մէկ մարդ չէ մնացէ, բոլորը ջարդուած :

Ղարադաղու թագաւոր ու վազիր փախան էկան քաղաք, ինչքան որ դիտուն մարդիկ կար, ժողվին բերին թէ՝

— Մէկ ազամարդի ձեռից մեր քաղաք աւիրուաւ :

Դիտուն մարդիկ ըսին՝

— Թա՛գաւոր, քանքանչիներ (1) պտի էն դարի տակ դարակել տու՛ր :

Մէ քանի քանքանչի ճամբեց. օխտն օր գիշեր ցերեկ էն դարի տակ դարակեցին : Թագաւոր էլի ղօշուն վերցրեց, գնաց Օձմանգաղի թագաւորի քաղքի չորս բոլորը առաւ :

Խաբար բերին Բուրդէուն թէ՝

— Բու՛րդէ, է՛լ էն մարդիկ էկան կռիւ էնելու մեզի հետ :

Բուրդէն հեծաւ ձին, քշեց էն դարի գլօխ ու կայնաւ, տեսաւ՝ աստղունքին, քարին, թփին հէսաբ կայ, ղօշունին հէսաբ չկայ : Միտք արաց՝ թէ՝ մէկ բռնամ, որ ջանիս հանգստութեն ըլնի. թէ չէ կը ճրղուիմ :

Մէկ բռնաց. որ բռնաց, դարը քանդուաւ, Բուրդէն խառուաւ խո-ղի հետ, քարի հետ, թփի հետ ու գըլխվէր էկաւ :

Բռռացին — Պեհաման (2) թալէ՛ք :

Պեհամաններ քցեցին. հարիր քեաման յընկաւ Բուրդէու ջան ու ջանդակ, ձեռ ու բուրք (3) բռնեցին : Ու վերցին դպա Ղարադաղու թա-գաւորի քաղաք տարան, բերին մէյդնի մէջ կայնըցրին : Ուզեցան որ

(1) Ականահատներ : — (2) Պեհամանդ : — (3) Ամուր :

վիզ զարկել ափն․ վազքերի մէկն էկաւ տեսաւ որ՝ էնպէս մէկ տղայ այ, ոչ թէ խամ մարդու ,— խաս մարդու տղայ այ։

Ասաց՝ — Թա՛գաւոր, ի՞նչ միտք կենես։

Ասաց՝ — Ի՞նչ միտք պտի էնեմ․ որ էսի մեր քօք բերեց , պտի վիզ զանել տամ։

Ասաց՝ — Ես կիրիչկեմ էդի խամ մարդու տղայ չէ , խաս մարդու տղայ այ․ մեր օրէնք իրաւունք չի տայ որ խաս մարդու վրայ սուր բանվի։

Ասաց — Ըբը ի՞նչ էնենք։

Ասաց — Տա՛ր քաղքից էրկու վերստ ցածր․ ունես խորեր, որ հարիր գեազանոց են, որ էրկու հարիր գեազանոց են․ մէկ խորի մէջ [illegible] դրու․ մէկ ջաղցի քար էլ դի՛ր խորի բերնի վրէն, էրկու դեւ էլ դիր պահապան , թո էրթայ մեայ յաւիտենական խորի մէջ։

## Ը․

*Մենք խաբար ո՞րտեղէն տանք՝*
*Սասումայ քաղքից։*

Սասումայ թագաւոր Զալ ունէր մէ հատ աղջիկ։

Աղջիկ գիշեր էրազին տեսաւ որ՝ իրանց փահլեվան Բուրղէն չուր ծծեր ալի մէջ անկուած էր։ Բնուց յիմցաւ տեսաւ որ էրազ էր։

Մտածեց՝ մեր Բուրղէու մօտէն թագաւոր խաբար ունի՞ թէ չէ։ Ասաց՝ լուանայ, պտի էրթամ հարցնեմ տեսնեմ՝ խաբա՞ր է թէ չէ։

Մէկ սհաթմ էլ չ՛քաշեց, աղջիկն էնպէս հերստաւ, որ հերսէն պտի ճղուէր։ Իսկոյն ճրագ վառեց , դպա Զալ թագաւորի օթախը գնաց։ Թոխմախով դուռ ծեծեց, թագաւոր ասաց՝

— Էս վո՞վ այ մեր դուռ կ՛ծեծայ։

Ասաց՝ — Ես եմ , թա՛գաւոր։

Ասաց՝ — Ա՛ղջի, ղահպայ (1) , չե՞ս թողնէ քնինք։

Ասաց՝ — Թա՛գաւոր, ի՞նչ քնինք, որ գիշերս էրազին տեսեր եմ , որ Բուրղէն չուր ղոլթուղներ ալի մէջ անկուած։ Էս սհաթին մէ խաբարմ կ՛բերես — բե՛ , թէ չես բերէ — պտի հերսիցս ճղուիմ։

Թագաւոր մտածեց ասաց՝

— Վե՞րնից խաբար առնիմ , վե՞րնից չառնիմ կէս գիշերուայ ժամանակ։ Էթամ Զըմրութ Ղուշի կուշտ, էնի աշխարք շատ մանգալող այ։

Զըմրութ Ղուշն էլ օխպաւակ ծովի վրայ այ։

Էն սհաթին յէլաւ վերցուց Ռուստամ (իրա աղբէրն էր) Զէնով Յօ-

(1) Լիրբ։

վանն ու գնաց դպա Զըմրութ Ղուշ։ Զըմրութ Ղուշ տեսաւ օր՝ Զալ Թագաւոր դպա իրան կուգայ, անից էրկու վերստ էկաւ յառէջ։

— Զա՛լ Թագաւոր, ասաց, խէ՞ր ըլնի էսայ վախտ էկեր ես։

Ասաց — Զը՛մրութ Ղուշտ, մեր Թուրքէու մօտէն մէ խաբար տուր։

Ասաց — Զա՛լ Թագաւոր, խացն ի գինին, տէր կենդանին, որ ես խաբար չունիմ Թուրքէու մօտէն։

Ասաց — Ըբա վո՞վ այ խաբար։

— Ղ ո փ ո յ Ն կ դ ա ս ա՛ ր ի (1), էն այ խաբար, թէ չէ ուրիշ մարդ խաբար չունի։ Համայ Ղոփոյ Նկդասարին էլ էս օխտը տարի ձեր ադգի ձինից դատարգիւն էղեր այ (2)։ Գնա՛ Ղոփոյ Նկդասարի կուշտ։

Զալ Թագաւոր ուզեցաւ օր պտի էթէր, ասաց — Էզմալ մի՛ գնա, գնա՛ մի խանչա (3) պատրաստա՛, լաւ ադեգ խորակներ լցրու մէջ, տուր Ռուստամին ու գնացէք դպա Ղոփոյ Նկդասարին։

Ու գնացին մէկ խանչա պատրաստին ու դպա Ղոփոյ Նկդասարին գնացին։

Ղոփայ Նկդասարին տեսաւ օր՝ Զալ Թագաւոր իրա աղբրներով դպա իրան կը գայ, սկսեց օր պտի փախնէր։ Զալ Թագաւոր ասաց՝

— Ղոփոյ Նկդասար, խացն ի գինին, տէր կենդանին, քեզի պատուի եմ էկե։

Ու տարաւ խանչէն դրեց Ղոփոյ Նկդասարի յառէջ։ Նաց կերաւ, գինի արաղ խմաւ, դարձաւ թէ՝

— Զա՛լ Թագաւոր, խէ՞ր ըլնի քու գալը։

Ասաց — Մեր Թուրքէու մօտէն մէկ խաբարմ տու՛ր։

Ասաց — Ղարադաղու Թագաւորի պալատի տակ մէկ խոր կայ, Թուրքէն էն խորի մէջն այ, ջաղցքար բերնին, էրկու դեւ էլ պահապան։ Դէ գնա խա՛ն։

Ասաց — Կը խնդրեմ մէկ քոմակ էնես աղէներուն։

Ասաց — Թա՛գաւոր, քու խաց կերեր եմ, քոմակ կանեմ, ամա քու աղբրներ երդում ուտեն, որ ճամբէն չ'դառնան։ Էս օխտ տարի ես ձեր ադգի ձինից դատարգիւն եմ էղէ։

Ռուստամ, Ցոլան երդում կերան Զալ Թագաւորի գլօխ թէ՝ մենք երբէք չ'դառանք ճամբէն։

Ու գնացին՝ Ռուստամ, Ցոլան, Ղոփոյ Նկդասար։

Գնացին խասան Ղարադաղու Թագաւորի քաղքին։ Ղոփոյ Նկդասար ասաց՝

— Տղէ՛ք, էն էրկու դեւ կ'տեսնի՞ք. ձեր եղբօր պահապաններն են։ Կանա՞ք ամէն մէկդ մէ քար բերէք ընձի։

---

(1) Պարսկերէն բառ է որ նշանակում է «Միձնաանի»։ — (2) Հեռացել — (3) Մատուցարան։

Ամէն մէկ իրեք փթանոց քար վերցին բերին։ Ղոփոյ Նկղատարու-քամակին կար մէկ հաստ պարսէտ. իրեք փթանոց քար դրեց մէջ, մէ անդամ պտըտեց ու ղարկեց՝ մէկ գեւղին ջարդեց կտորեց։ Մէկէլ քարն էլ դրեց — մէկէլ գեւղին էլ կտորեց։

Ասաց — Դու էսանեղ կայնէք, ես էթամ։

Գնաց խորի վրայ. ձեռ թալեց ջաղցի քարն ու քաշեց. ասաց՝

— Բու՛րղէ։

Ասաց — Ջա՛նէ, Ղոփոյ Նկղատարի։

Ասաց — Քեզի խորէն կր հանեմ։

Ասաց — Կը հանես՝ կոյ կը հանես։

Ասաց — Ջալ Թագաւորի անուն երդում տուր, որ չ՛գոռաս։

Ասաց — Իրեք հարիր քեզի պէս Ղոփոյ Նկղատարի տակի, որ ըռ-տուց դուս եմ ելէ՝ կ՚բռնամ։

Ու թողաց Ղոփոյ Նկղատարի փախաւ։

Գնաց Ռուստամի, Ցոլանի կուշտ, ասաց՝

— Տղէ՛ք, կ՚բռնայ, խետ իլլաջ չի լինի։

Շուռ էկէք տեսէք եօրղան դօշակ կարա՞ք դտնիք։

Շուռ էկան գտան։

Ասաց — Փաթթէք իմ գլօխ, որ ձէն իմ անկաջ չընկնի։

Ու փաթթեցին Ղոփոյ Նկղատարու գլօխ։ Գնաց խորի վրայ կայնաւ, ձեռից բռնեց, քաշեց։

Բուրղէն յէլաւ խորի ղըրաղ նստաւ։ Իրիշկեց տեսաւ օր՝ Ղարադաղու Թագաւորի քաղաքն այ։ Դանչեց Ռուստամին, Ցոլանին ասաց՝

— Էղանք չորս խոգի. քաղաքն առէք արանք ու ջարդէ՛ք։

Քաղաքն առին արին ու ջարդեցին։

Խաբարն էկաւ Ղարադաղու Թագաւորին, թէ՝ Բուրղէն խորից դուս էկէ, իրեք մարդ էլ էկան հասան իրէ, ազգական այ — գիտեն, ազգական չէ — չեն գիտէ. քաղաք ջարդելով էկան։ Մէ իլլաջ գիտես — էրա՛, չես գիտէ — մեզ էլ կ՚ջարդայ։

Թագաւոր ղանչեց էն վազրին, որ չ՚թողեց Բուրղէու գլօխ զարկին, ասաց՝ — Վա՛զիր, թէ մէ բան կարցար դու — կենես, չ՚կարցար — պրծաւ գնաց։

Վազիր յէլաւ գնաց Բուրղէու յառէջ. էն վախտ խոսաւ Բուրղէուն, որ քրանքի մէջ փուշմանմիշ էղած կ՚ջարդայ ռիաթ։ Խասնել ժամանակին խնդրուաւ։

Ասաց — Վա՛զիր, ուրիշ մարդ չկայ գէր իմ յառէջ. դո՞ւ պտի գէր։ Մէկ բանով բաշխեմ ձեր ազատութեն, էրկուով չի. կեթաս ձեր Թագաւորին կասես մէկ ղաբալայ (1) դրոց, տասվերկու սինօղ ձեռ դը-

(1) Պայման։

նեն, Թագաւորն էլ փեչատ խփայ, թէ՝ քանի որ աշխարք չէն այ, Օծմանդաղի Թագաւորին վերջի տվող ընինք։

Իսկ էն ռհաթին պատրաստեցին ղաբալէն, ավին։ Վերցրին ղաբալէն էկան գյայ Օծմանդաղի Թագաւորի քաղաք։ Խապէխաս (1) էղնելով Ղոփոյ Եկդաստի ասաց՝

— Տղէրք, դուք Զալ Թագաւորի աղբէրներն էք, ձեզի աշխարքի մալ դովլաթ ունէք, ես չօչէն (2) եմ, աղքատ մարդ եմ. էդ ղաբալէն տուէք ընձի, ձեզանից յառէջ տանիմ տամ Թագաւորին, որ մէկ բան բաշխայ ընձի տանեմ ուտեմ։

Ղաբալէն տուին Ղոփոյ Եկդաստին, ըսին՝

— Առ ու գնա՛։

Գնաց տեսաւ որ մէ աղջիկ իրրուղ ձեռ դպա հաւուզ ջրի կերթայ. Իրիշկեց տեսաւ որ էնպէս մէկ աղջիկ այ, արեգակյան կըսայ՝ դու դուս մի՛ էլնի, ես գելնիմ. ճրագի պէս լոյս կուտայ. Ջուր կ՚խմայ՝ դունգ դունդ բողզէն կերեւայ։ Զուտես, չ՚խմես օխտն օր գիշեր ցերեկ էդ աղչկայ մանջամալին (3), բոյ բուսաթին թամաշայ էնես։

Ցետոյ մոտծաւ Ղոփոյ Եկդաստի՝

— Թագաւոր ի՛նչ տայ, որ ըստուց լաւ էղնի։

Զեռ Թալեց աղջկայ Թեւից. ըցեք քամակը, փախաւ։

Բուրղէն իրիշկեց տեսաւ՝ Ղոփոյ Եկդաստին կ՚փախցու Թագաւորի աղջիկ. յըն՚յաւ յետեւ, մէկ դուրղ զարկեց. Ղոփոյ Եկդաստուն ու Թագաւորի աղջիկ էնպէս սըվաղեց քարից, որ օխտ օր որ ման գէր չէր գիտէր թէ էս ուրիշ բան էր։

Վերցին ղաբալէն ու գացին։

Ղաբալէն տարան տվին Օծմանդաղի Թագաւորին։ Թագաւոր կարգաց որ՝ Ղարադաղու Թագաւոր իրան վերջի տվող էղեր այ։

Ասաց — Աղջիկ բերէք փէշքէշ տանք Բուրղէուն։

Բուրղէն ասաց՝

— Աղջիկ սըլաղ էրեր եմ քարից։

Նստան քէֆ, ուտել, խմել, ուրախութեն էնել։



## Բուրզէն եւ թագաւորի աղիջկը։

### Ա.

Մենք խաբար ո՞րտեղէն տանք՝
Փոլադայ Դարբանդուց։

(1) Մօտ։ — (2) Անտուն։ — (3) Գեղեցկութիւն։

Փոլադայ Դարբանդու Թագաւոր զօշուն ժողվեց գնաց Սասունայ վրէն, որ պտի կռիւ էնայ Ձալ Թագաւորի հետ։

Ձալ Թագաւորին մէկ տղայ կէր, անուն Ց ա ղ կ է Ց ա հ ր ա մ ա զ. գնաց խնդրուաւ տղի մօտէն թէ՝ դուշմանն քաղքի բոլորն առեր այ։ Ցաղկէ Ցահրամազ ձին խեծաւ, Ձալն էլ մէկ ձի խեծաւ, գնացին զօշու-նի մէջ կռիւ էնելու։ Բուրղէն Օծմանդաղի Թագաւորի քաղքից դուրս յէլաւ դպա Սասմայ քաղաք պտի գէր. իսկ դուրս ելնել բանին մէ գրզի ձէն լսեց. իսկոյն յիմցաւ որ Ցաղկէ Ցահրամազի գուրզն էր։

Ասաց՝ — Տղէ՛ք, ջալդ էրէ՛ք, քէլէ՛ք, որ մեր քաղքի վրայ դուշ-մանն այ ալէ։

Ու գնացին խասան. տեսան որ ահագին մէ զօշուն Ձալ Թագաւորի Ցաղկէ Ցահրամազի հետ կռիւ կենեն։ Իսկոյն հասնել բանին Բուրղէն մէ գուրզ զարկեց զօշունին. մէկ մարդ չ'պրծաւ, բոլորը կոտորվան։

Ձալ Թագաւոր տեսաւ որ Բուրղէն էկաւ խասաւ, փոստէ բարխէ բարբարանի (1) իրա ձեռքով տարաւ. քցեց Բուրղէի թեւերի վրէն, ասաց՝

— Քեզի արժան այ Թագաւորութեն, ես ընթիարցեր եմ։

Ցաղկէ Ցահրամազ ինատ արից, զարկեց գնաց աշխարք ման գա-լու թէ՝ որդե որ մէ գող տղայ ըլնի, ամսական փողով բերեմ քո քաղքի վրայ կռիւ։

Բ.

Մնաց մէ օխտ օր ժամանակի, Բուրղէն խեծաւ ձին, գնաց աւ-էնելու։ Տեսաւ՝ ջէյրանի մէկն յառեջէն փախաւ. ձին քցեց յետեւանց։ Օխտ օր գիշեր ցերեկ տարաւ, բանեց ջէյրան ղրեց գիրկ։ Ու մտածաւ տեսաւ՝ էնպէս մէ երկիր այ, որ մօրից ծնած չի տեսէ։ Ուզեցաւ որ գլխիվեր էթեր. տեսաւ՝ գեւի մէկն ջամբու խեա կուգայ, մաթի մէկն երկինք, մէկն գետին. էն վախտ օր բերան յիրար կ'տփայ բուռ բուռ կրակ բերնէն կ'թափի։

— Բարեւ, ասաց, խո՛ղածին. ո՞րտուց ես։

— Սասունայ քաղքէն։

— Դու Բուրղէին կ'ճանչնա՞ս։

— Լա՛ւ։

— Ինչո՞վ փորցած կ'յինես դու։

— Էն վախտ որ ասս կ'ճխտէր էնուր ոտին, ջու խտ ակընջից էլ կ'բռնի, ընձի կ'վերցէր ու կ'քցէր։

— Դէ յարի ասս կոխա՛, ակընջներս էլ բռնա՛, տեսնիմ կարա՞մ քցեմ քեզի։

Ու կոխեց, ակընջից բռնեց ու սխմեց. ու կտրուաւ գետին գը-

(1) Բարաղի աւելով՝ դա Քրդերի մեծութեան նշան է աջ թեւի վերայ։

նաց, ակընջներ ջուխտն էլ քօքանան էլաւ· ու պոռաց թեւն, ասաց՝

— Ամա՛ն, թո՛ղ։

— Ի՞նչ թողամ, որ իսկ Բուրղէն եմ։

— Ամա՛ն, Բու՛րղէ, թո՛ղ։

— Թողեց· որ թողեց, գեւ մէ դիր գրեց, Բուրղէի ձին խատաւ (1)· Բուրղէն գուրզմ զարկեց վըր գեւի գլխուն, ջան ջահնամի էղաւ։

Թամք չլկեց ու եայան գնաց։

Մէկ անծանօթ քաղաքմ ռաստ էկաւ· տեսաւ որ մէկ պառաւ նըրատուկ մէ տան մէջ ջահրայ կ'մանայ։

— Նա՛նէ, ասաց, կըլնիմ քեզի ողայ։ Ի՞նչ փէշակ էս քաղքի մէջ կայ, որ բանցնեմ ու քեզի պախեմ։

Պառաւն ասաց՝

— Ո՛րդի, լաւ գիւլաշչի կըլնե՞ս։

— Գիւլաշ կպնող կա՞յ։

— Գնա՛ թագաւորի դուռ, նստի բընակդաշու (2) վրէն· իսկ էն սհաթին գիտեն որ դու գիւլաշչի ես ու գիւլաշչին կը բերեն որ դու կպնիս։

Գնաց նստաւ էդ բընակդաշու վրէն· թագաւորի վազիրներ տեսան՝ մէկ մարդ բընակդաշու վրէն նստած, ըսին՝

— Գնացէ՛ք մեր գիւլաշցուն տարէք թող կպնին։

— Գնացին գիւլաշցուն տարան, ըսին՝

— Թա՛զայ գալող գիւլաշցի, գիտե՞ս մեր մէջ պայման կայ՝ որ մեր գիւլաշցին քեզի զարկայ գետին, վիզդ կ'կտռայ անխօսալ։

Ասաց՝ — Ես չեմ վախնայ, բերէ՛ք կպնինք։

Երկու, գիւլաշցի խասան յիրար։

Բուրղէն թագաւորի գիւլաշցուն տփեց գետին, չոքեր զարկեց վըր սրտին՝ դուգմէք (3) բրդաւ, դուս յէլաւ եախից· տեսաւ՝ ջուխտմ չամամ ծիծ յընկաւ դուս։

Դու մի ասա՝ էդ գիւլաշցին թագաւորի աղջիկն այ· էնպէս այ կարգադրէ ուր մօքին՝ թէ որ տղամարդ զարկեմ գետին, ընդ ու վիզն պտի կտռեմ· ով որ ընձի զարկեց գետին՝ էն տղամարդ պտի առնեմ ես։

Բուրղէն որ զարկեց գետին, թագաւոր դոռալով էկաւ թէ՝

— Մի՛ սպանի իմ գիւլաշցուն, բաշխի քեզ։

Էն սհաթին բերեցին դհոլ զուռնէն, տարան Բուրղէին թագաւորի աղջկան պսակեցին, առան էկան։ Բուրղէն կայնաւ թէ՝

— Ես կերթամ պառաւ նանի տուն, ուրիշ տեղ չեմ էրթայ։

Գ.

Օխտ օր մնաց պառաւի տուն, ասաց՝

— Թա՛գաւորի աղջիկ, էնպէս ձի կա՞յ քու հօր ձիաներու մէջ,

---

(1) Սատակեց։ — (2) Պատգամի աթոռ։ Ուրիշ հեքեաթներում այս աթոռի վերայ նստելը խնամախօսութեան նշան է։ — (3) Կոճակներ։

որ ընձի պտըտցնայ ։

Ասաց — Ուրբաթէ ուրբաթ հրեղէն այղըռ դուս կուգայ ծովից ․ իմ խօր իլխին ջարդելով կ'բերայ լցէ հայեաթ ու յետ կը դառնայ ։

Ուրբաթ օր գնաց ու ձին բռնեց ․ խեծաւ էկաւ պառաւի դուռ կայնաւ, ասաց՝

— Նա՛նի, Թագաւորի աղջիկ մացէք բարով, ես խօ գնացի ։

Թագաւորի աղջիկ ասաց՝

— Ըբը ե՞ս ։

Ասաց՝ — Ես խօ քեզի տանող չեմ ։

Ու գնաց խասաւ Սասմայ քաղաք ։

Մնաց իննը ամիս, իննը սհաթ, իննը դաղղայ (1), Թագաւորի աղջիկ չոքեր ղարկեց գետին մէկ խատ տղայ բերեց, որ տղէն այ Բուրղէի վաստակ ։

Բոլոր ժողովվան էկան, որ պէտք այ տղին անուն դնեն ։ Աղջիկն ասաց՝

— Ընձից սավայի մարդ չ'կայ, ես կ'դնեմ ։

Տղի անուն դրեց Թ ղ բ ո ւ ր է Շ է ր ա ն ։

### Թղբուրէ Շէրան ։

Թղբուրէ Շէրան էղաւ էրկու տարեկան տղայ, կերթէր ճան խաղալու ․ ձեռ կը թլէր տղէներու ականջ, կ'բռնէր յանկըջից ու կը թըլէր՝ ջանդակ կերթէր, յանկաջ կը մնէր ։

Քաշեց մէ ժում մէ ժամանակ, մինչեւ Թղբուրէ Շէրան էղաւ տասներխինգ տարեկան տղայ ։

Տեսաւ օր քաղքի դրաղ չաղըր չաղըրի վրայ զարկուած ։ Գնաց ասաց՝

— Էս ի՞նչ չաղըր են ։

Ասացին — Ֆաղկէ Ֆահրամազի ձիաւորներն ենք սուս կաց, որ լսի, փորդ կ'թափայ ։

Ասաց՝ — Ո՞րն այ Ֆաղկէ Ֆահրամազի չաղըր ։

Ասացին — Էդ մենծ չաղըր ընդոր չաղըրն այ ։

Գնաց չաղըրի դուռ կայնաւ ասաց՝

— Ֆաղկէ Ֆահրամազ ես, ինչ ես, դուս յարի՛ ։

Ֆաղկէ Ֆահրամազ դուս էկաւ ։

Ասաց՝ — Գնա՛ գրա՛ ընձի ձիաւոր ։

Ասաց՝ — Արի Թըրխ տկով անցի, որ քեզ գրեմ ձիաւոր ։

Ասաց՝ — Կայնի էրթամ ձիս խեծնիմ գամ, բալքի դու ընձի չ'գըրես ձիաւոր ։

---

(1) Րօպէ ։

Ու գնաց տուն, պատմեց մօր, թէ՝ մէկ մարդ եկէ, կսի արի թրիս տկով ընցի, որ քեզի վերցում ձիաւոր։

Մէրն ասաց՝

— Ո՛րդի, գնա՛ ձեռքմ տղամարդի չօր բեր։

Մէր խաղաւ, էղան ջուխտ ձիաւոր, քշեցին գացին չադրի յառէջ կայնան։

Ասաց՝ — Վէ կաց մեզի ձիաւոր դրա՛ · թէ չես դրէ — կ'բրդենք չադրդ վրէդ։

Ծաղկէ Ծանրամազ տեսաւ օր էտոնց հետ իլլաջ (1) չինի, ասաց՝ կանի տանիմ ըցկեմ Բուրզէի ձեռ, ըստոնց հախէն թող գայ։

Ցէլան ձիաւորուան ու գացին Սամայ քաղաք։

Ծաղկէ Ծանրամազ գիր գրեց ճամբեց Զալ Թագաւորին՝ եա արի կռիւ էնենք, եա չէ քաղաքդ սաղ կաւիրեմ։

Զալ Թագաւոր ղանչեց Ռուստամին — Գնա՛, ասաց, խելք այ, խրատ այ ա՛ռ արի՛։

Ռուստամ խեծաւ ձին, գնաց։

Ծաղկէ Ծանրամազ ասաց՝

— Թղբուրէ Շէրան, գնա՛, հէս այ էկաւ, գնա՛ կռիւ արա՛։

Խեծաւ ձին ու գնաց յառէջ, ասաց՝

— Կայնի՛, մի՛ գա·

Ու գուրզմ քցեց· Ռուստամ յընկաւ քիթ ու մութի վրայ· յէլաւ փախաւ քաղաք։

Զալ Թագաւոր ասաց՝

— Տղա՛յ, յընչի՞ էկար։

Ասաց՝ — Թագաւոր, քու գլօխ չատ ըլնի (2), մէկը կայ էտոնց մէջ, որ գուրզ կ'թալայ իսկոյն կասես թէ մեր Բուրզէի գուրզն այ։

Ասաց՝ — Գացէ՛ք Բուրզէին ղանչէք բերէ՛ք։

Բուրզէն օր էկաւ, Թագաւոր ասաց՝

— Բու՛րզէ·

— Ի՞նչ այ, Թա՛գաւոր·

— Օր դու գացիր օտարութեան մէջ ամիսմ էրկու անցցիր, խօ չե՞ս կարգուէ։

Ասաց՝ — Թագաւոր, օխտ օր մէ թագաւորի աղջիկ առեր եմ։

— Դէ գնա՛ քաշա՛, ջանդ ղուս գայ։

Ցէլաւ գնաց յառէջ։

Թղբուրէ Շէրան ձին խեծաւ, գուրզ վերցրեց, քշեց Բուրզէի վրէն։

— Առ, ասաց, քեզի մէկ գուրզ քցի։

Իսկ էն սհաթին քցած ժամանակ Բուրզէն բռնեց գուրզ։ Գուրզմ

---

(1) Հնար։ — Ճար-պարի։

Եւ Թուրքին պառկեց — Թզրուրէ Ծէրան էկաւ յընկաւ ձիու ոտնաղներրի առաջը · յիշաւ օր տղի գլօխ կտռէր ։ Մէր ճանչցաւ, ըսաց՝

— Նա գիտա՛ս մեր տղէն այ, ի՞նչ կնենս ։

Ներ մէր յիրար հետ խօսալով տղի օյաղ (1) վրէն էկաւ. ասաց՝

— Տա՛նէ, ել ո՞րն այ ·

— Քու խէրն այ, լա՛օ (2) ։

Թագաւորի աղջիկ ասաց՝

— Բո՛ւ րղէ, էս մարդ քու ի՞նչդ այ ·

Ասաց՝ — Իմ հօրաղբօր տղէն այ ·

Ասաց՝ — Ըէը ընչի խամար կռիւ կանայ ձեղի խետ ·

Ասաց՝ — Ջուձքի Թագաւորութեն Ջալ տուէ ընձի, նէհրականութեն (3) կընէ ընձի խետ ·

Ասաց՝ — Ձեր Թագաւորութեն ընչի՞ վրայ այ ։

Ասաց՝ — Փուսէ՞ երխէ բարբարանի ։

Բուրղէի Թևէից տասւ, քցեց Ցաղկէ Ցանհրամադի Թեւերու վրէն ։ Էղան մէկ հօտ մէկ հովիւ ։

Բոլոր ձիաւորներ ջարդեցին, էլան գնա Սասմայ քաղաք գնացին ։ Թագաւոր գնոլով, զուռնով, տաղով, տղրաթով, Թոփով ջարախանով (4), վազիրով, վաքիլով նոր տարան Բուրղէին պսակեցին ։

Ըստոնք խասան իրանց մուրադին,

Դուք էլ խասնիք ձեր մուրադին ։

---

(1) Ուշքը ։ — (2) Քրդ. նշանակում է՝ ո՛րդի ։ — (3) Ոխ ։ — (4) Վառօդ ։

Վ ա ր դ ա ն  Գ ա լ ո ւ ս տ ե ա ն – 62 տարեկան, բայց դեռ աշխոյժ, հարուստ յիշողութեամբ ծերունի է։ Էջմիածին նա գաղթել է Վանայ նահանգի Ջիբիխլու գիւղից, որտեղ նա պարապում էր հողագործութեամբ, Ռուսահայաստանում ապրում է օրական վարձով։ Նորա ուսուցիչն է եղել Մուխսի Գիւլան, որ երեք անգամ այցելել է Պօլիս եւ մի ժամանակ այնտեղ աշուղութիւն (*) արել։

Վարդանի պատմած աւանդութիւնն ներկայացնում է Իրանի եւ Տուրանի դարեւոր կռիւներից մէկն, որտեղ գլխաւոր հերոսն է հանդիսանում Ռուստամ։

# ՌՈՍՏԱՄ

## Ա·

Քեւ Խոսրայ՝ Իրանայ թագաւորն էր, Աւլասիաբայ՝ Թիւրանայ թագաւորն էր։

Մէկ օր Քեւ Խոսրէն ուր դիւանի մէջ կ՚կանչի այան (1) մարդիր, չօքի վրէն կ՚կայնի, կ՚գրուցի կասի թէ՝

— Իրանայ մէջ ինչ բան օր ես բռնիմ անիմ, վո՞վ կայ օր գեայ իմ յառէջ։

Տիւս Նաուզար ասաց՝

— Թա՛գաւուր, խօսք քիւ խօսքն ի, սիւ թագաւոր իս, մենք քիւ խօսք չենք կանայ կուտրի, ապա էսօր Ռոստամ քիւ դիւանի մէջ չի, լաւ չի օր դիւ էտա խօսքիր կասիս։

Տիւս Նաուզար օր էտ խօսքն ասաց· Թագաւոր բռնից գնջիլ դրեց վիզ, ասաց՝

— Վոյ օր գեայ էսա մարդիւն ոջայ (2) էնի, էն մարդն ընձի գըլխու վեր չի բերի · տեսնանք վո՞վ Իրանայ մէջ կ՚գեայ գեողայ (2) կանի։

Մէկ փալիւան խեծաւ ուր ձին, սիլահնիր կապից ուր մէջք, գընաց Ռոստամի դիւան։ Ռոստամ իրիչկաց ասաց՝

— Փա՛լիւան, ո՞րտեղաց կ՚գեաս։

Ասաց՝ — Թագաւուրի սարէն կ՚գեամ։

Ասաց՝ — Թագաւուր ի՞նչ կանի։

Ասաց՝ — Թագաւուր յէրէկ յիրիկուն դիւան դրից, ուր այան մարդիր ժողվրդից, էղաւ չօքի վրէն, ասաց՝ էս բան օր Իրանայ մէջ բռ-

---

(*) Ա շ ո ւ ղ ն ե ր Արեւելքում կոչւում են թափառական երաժիշտներ, որ մօտ յիշեցնում են մեզ միջնադարեան տրուբադուրներին. իրանց անբաժան ընկերով՝ սօթնալար սազի հետ, նոքա շրջում են քաղաքէ քաղաք, գիւղէ գիւղ փող վաստակելու։ Նոցա ծրագիրն բաղկացած է առհասարակ դիւցազնական աւանդութիւններից («Քեոռ-Օղլի», «Շահ Իսմայիլ», «Շահ Աբաս») եւ սիրահարական հեքեաթներից («Դհար Միրզա», «Նեարամի»)։ Պատմում եւ երգում են տաճկերէն։ — (1) Մեծաւոր։ — (2) Խնդիր։

նէմ. մարդ կա՞յ որ տի՝ կարենալ չիմ անէ (1)։ Տիւս Նաուզար ասաց՝

— Թա՛գաւոր, քիւ խօսք խօսք ի, մինք չենք կանայ քիւ խօսք կուտրէ։ Ապա Ռոստամ քիւ դիւանի մէջ չի, լաւ չի որ տիւ էտա խօսքեր տառնց Ռոստամին քիւ դիւանի մէջ կասիս։ Էն խօսքն որ Տիւս Նաուզար ասաց, Թագաւոր էնոր բանից, գնջիլ դրից վիզ, դրից բանտատուն։ Սապապ ի՞նչ, ասնանք վո՞ր մարդ կ'գնայ ոջայ էնի, մարդիւն թողնայ։

Ռոստամ ասաց՝

— Փա՛լիւան, յէլի գնա՛ Գեւ Խոսրայ Թագաւորին ասա՛՝ Ռոստամ կասայ՝ Ես էնոր ձեռ կ'պագնեմ, էն միր Թագաւորն ի, կ'խնդրեմ Տիւս Նաուզար տայ իմ խաթրը թողնի, էնիկ մեր ամակդա՛րն (2) ի։

Փալիւան էլաւ գնաց Թագաւորի քով, ասաց՝

— Թա՛գաւոր, Ռոստամ կ'ասէր՝ ես էնոր ձեռք կ'պագնեմ, խօսք էնու խօսքն ի, էն մի (3) Թագաւորն ի, ամա Տիւս Նաուզար մի ամակդա՛րն ի, պէտք ի տայ իմ խաթրը թողնի։

Որ փալիւան Թագաւորին ասաց, Թագաւոր չատ ըռըկաւ (4), բերից Տիւս Նաուզար գնջլեով տարաւ Թալից գնդան, յիրդիւմ էրաւ, որ պտի զնդանի մէջ մնայ, չուր մեռնի։

Էն փալիւան գնա՛ց Ռոստամին ջուաբ տարաւ՝ Տիւս Նաուզար, որ տիւ աջայ արիր, էնիկ բանի քիւ խնատուն Թալից գնդան։

Ռոստամ էնանեղ ջիւրիւ աւաւ (5), ասաց՝

Որ Թագաւոր էն մարդն իմ խաթրը չը թողից, էլ իս էն դիւշման կըլնինք, կ'զարկինք մէկ մէկու։

Ասաց Ռոստամ, դիւան իդի (6), ուր մարդիր կանչից ասաց՝

— Իս Գեւ Խոսրայ Թագաւորի խիտ պտի զարկւիմ։

Ժողվըրդից ուր կօչուն, կասի՝ սաքսան հազար չագըր էղաւ, ամեն չագըր սաքսան հազար փալիւան էղաւ։

Իրանայ մէջ էղաւ էրկու Թիրայ (7)։

## Բ·

Մէկ փալիւան կէր, անուն Գեւշիլ։

Գեւշիլ գնաց Թիւրան Ալւասիայ Թագաւորին ջուաբ տարաւ։

Ալւասիայ խարցնից ասաց՝

— Փա՛լիւան, տիւ ո՞րտեղացի իս։

Ասաց՝ — Իս Իրանայ իմ։

Ասաց՝ — Տիւ Իրանայ ընչի՞ ես եկի Թիւրան կան կ'գնաս (8)։

---

(1) Համաձայն չեմ։ — (2) Օգնական։ — (3) Մեր։ — (4) Բարկացաւ։ — (5) Զայրացաւ։ — (6) Խորհուրդ կազմեց։ — (7) Մաս, բանակ։ — (8) Կ'շրջիս։

Ասաց՝ — Ես եկեր եմ քեզի մուշտուլուղ (1) եմ բերե։

Ասաց՝ ի՞նչ է։

Ասաց՝ — Իրանայ Թագաւոր Քեռ Խոսրէն Ռոստամ ընկեած յերաք էղած էրկու Թերայ, կ'զարկին մէկ մէկու մարգ կոպանին։ Ցօր քեզ օրն եկեր ի․ կօշուն կէնես կէրթաս Իրանայ մեծն կապանես, Թուրա-նայ պուճուրն տեղն կ'դնես։

Ալւառեայ ասաց՝

— Աղէկ ջուաբ բերեր․ յերկւան կանչեմ էն մեծաւրներ բերեմ, տեսնանք էնոնք ի՞նչ կասեն։

Ցերկուն յողղեց (2) մեծ մարդեր ժողւեց բերեց․ յողղեց Հման բերեց, Փերան, Բամեւսէ Կեաշան, Կզակղաէ Զենի (3), Աչքապես, Կղէ-յեւն։ Թագաւոր ասաց թէ՝

— Հմա՛ն, կասեն՝ Իրանայ Թագաւոր Խառ Ռոստամեն յընկած յե-րաք․ կօշուն էնենք էրթանք էտուէնց վերէն։ Ի՞չ կասես։

Հման ասաց՝

— Թա՛գաւոր, թէ իմ խօսքեն ականջ կանես՝ պտե չէրթաս կռեւ․ ուր (4) երկրի մէջ կռեւ կանեն, ի՞նչ ունես որ տեւ էրթաս։

Դոր (5) Փերանեց խարցուէնց կանե․ Փերան ասաց ուր Թագաւորեն՝

— Ինչկանդար կարօղ ես քեւ դեւշմանեն յաղթես՝ տո ճխտե գլխու վերէն։

Թագաւոր յրկուն ժողւեց ուր կօշուն, ասաց՝ Փերան աղէկ մուզեր է։

Քերեց Փերան խլղաթ (6) տւեց։

Կօշուն ժողւեց գնաց Իրանայ վերէն կռեւ։ Գնաց Սերանայ տեղ չադրներ զարկեց․ էնտեւց Թուղթմ գրեց ճամբեց Քեռ Խօսրայ Թա-գաւորե խամար, ասաց՝

— Եան կ'գեաս ընձի խետ կռեւ անես, եան քեւ խող քեար կ'մե-րուցեմ տանեմ։

## Գ․

Քեռ Խօսրէն յողղեց ուր փահլւանքտեր ժողւեց եկե կատե՝

— Փահլեւանքտեր, Թուրանայ Թագաւոր էկերե իմ կռեւ կուզե։

Մէկ փահլեւան կար, անուն Պէտագայ․ Թագաւորն ասաց՝

— Պէ՛տագայ, տեւ բայրաղ (7) վերեցեւ էրթանք կռեւ։

Պէտագայ ասաց՝

— Թա՛գաւոր, քեւ մէր գուլ (8) ի, քեւ մէր տու ընծի, գամ քեւ բայրաղ վերուցեմ, էրթանք կռեւ։

---

(1) Լուր։ — (2) Ուղարկեց։ — (3) Զինատառեցի։ — (4) Իւր։ — (5) Ցե-տոյ։ — (6) Ընծայ։ — (7) Դրօշ։ — (8) Այրի։

Թագաւորն ասաց՝

— Իմ մէր չըմ գիտի իմ խօսքին ականջ կանի եան չանի․ էրթանք կռիւ անենք՝ զարնանք՝ զեանք՝ իմ մօր մօտէն խարցունց անենք, անեանք՝ կէրթա՞յ մարդիւ․ որ գնայ՝ իմ մէր կ՚ասամ փիղի։

Պէտաղան ասաց Թագաւորին՝

— Թէ որ էրթանք կռիւ անենք, գալիւ ժամանակ ախու Թագաւոր խա ախր, բալքի ախու քիւ մէր չուեր ընձի։ Հիմայ պէտք ի սաս ընծի, ասրա (1) էրթանք կռիւ անենք։

Վէս Խօսրէն գնաց մօր մօտ, խարցունց արաւ, ասաց՝

— Թիւրանայ Թագաւոր էկեր իմ Սիրանայ տեղ (2) կօչուն գրեր, աեբրեր․ Ջուաբ արից ընձի խամար՝ կղեաս իմ կռիւ, չխօ (3) քիւ խող քեար կ՚վիրուցիմ կ՚ասնիմ։ Պէտք է Պէտայան ասնիս, որ գեայ իմ բայրաղ վիրուցի, էրթանք կռիւ։

Վէս Խօսրի մէր ասաց՝

— Պէտագան չի կանայ քի բան անանայ․ ախու իմ խօսքին ականջ արա՛, ես քիզի ինչ կասեմ․ գնա՛ Տիւս Նասուղօրը գընդաւնից խա՛ն, խըղալթ առ՛, ճամբխի էրթայ Ռոստամի մօտ, Ռոստամ գեայ քիւ գործ անենայ։

Վէս Խօսրէն յերդիւմ արաւ թէ՝ էն մարդ չիմ խանի գընդաւնից։

Մէրն ասաց՝

— Քիւ քէֆուն արա՛․ թէ որ խա ասիմ՝ խա իրեկ չըմ անի (4)․ ախու պտի ասիս՝ իմ մէր ընձի սապատ (5) էղնի, Թիւրանայ Թագաւոր գեայ իմ ժախտն առնի․ խա սապատ չիմ էղնը։ Որ ախու կամեցար ասիր, ին էլ հէրթամ էն մարդն կաանիմ։

Թագաւոր իրրից խարցնիս արաւ, ուր մէր ուզից Պէտագային։ Պէտագան բայրաղն վիրուցեց, գրից Թիւրի վէրէն, կօչուն քեաշեաւ։ Գնացին Ալւաքայի խետ կռիւ։

Իրեք օր գիշեր ցերեկ կռիւ արին։ Էնենց կռիւ էղաւ, չատ մարդ կոտրեաւ․ էնոց ձէնից, էնոց գիւրզերու զարկերից Սածու հրեշտակնիր էրկնուց Թամաշայ կանգնան էսուենց կուռն։ Շատ մարդ ասաւ՝ էսուենց զարբից (6) աշխարքն աւերաւ․ խելօք մարդիր ասին որ՝ Վէս Խօսրոյ Թագաւոր Ալւաքայ Թագաւոր կռիւ կանին, էնուենց զարբի ձէն ընկիր աշխարք։

Իրեք օր որ Թըմբմաւ էսուենց կռիւ, Պէտագան ասից բայրաղ փախաւ, Թագաւորն էլ փախաւ, էնոր կօչուն բիթուն փախան։

Մէկ մարդ, անուն Գօղարդ (7), ուր Թախտումով (8) մնաց մէյդանի

---

(1) Ապա։ — (2) Պսակելի անուով՝ գրաւոնքի տեղ է։ — (3) Ապա թէ ոչ։ — (4) Չեմ ամուսնանայ։ — (5) Պատճառ։ — (6) Հարուածից։ — (7) Ռոստամի քեռին է։ Նա ունէր 24 որդի, որոնք իրրեւ «ասիւծներ» էին ճակատամարտում» (Ֆիրդուսի)։ — (8) Խմբով։

մէջ. Ալւասխայի կօշուն էտունց վերէն ժազվըրտան։

Ալւասխայ ասաց՝

— Էտայ կօշուն էտայ մարդիրուց յխտ տուէք, Հման էնուր խիտ կոխւ անի։

Հման Գոդարդ իրիք օր գիշիր ցերեկ ղարկւան մէ մէկու։ Հման ասաց Գոդարդին՝

— Քու Թագաւուր փախիր ի, տիւ մէյդնից ելի տիւս։

Գոդարդը ասաց Հմանին՝

— Ո՞րն ի սալըղ ուիր, որ իմ տան (1) մարդ մէյդանից ըլնի փախի։

Հման կասի Գոդարդին՝

— Որ էնենցի, յրողղի քու բայրաղդար քու Թագաւուր կօչունով Թըղ գեայ մէյդան կանգնը. իմ Թագաւուր իմ գլխու վերէն կայնուկ ի, իս չեմ կանայ մէյդանից ըլնի տիւս։ Քու Թագաւուր որ էկաւ մէյդան, իս յոջիւ քի կլնիմ տիւս։

Մէկ տղայ կայ, անուն Բահրամ, խեծաւ գնաց Թագաւուրի մօտ ասաց՝

— Ցսօր իրիք օր մենք Հման մէ մէկու կը կուտուրինք. Հման ասաց՝ գնա՛ քու Թագաւուրին ասա բայրաղ բիրի մէյդան ղարկի, մենք յիոջիւ քի քեաշուինք։

Բահրամ ասաց՝

— Ցիւ՞ր ի քու բայրաղդար, բայրաղ վիրխւցի էրթանք մէյդան, որ Հմանըտուն կուուց քեաշւին էրթան։

Կեւ Խոսրայ Թագաւուր կանչից Պէտագայ, բիրից ասաց՝

— Արի՛ բայրաղ վիրիցիւ էրթանք մէյդան կռիւ։

Պէտագան բայրաղ Թալից գետին. Բահրամ խասաւ մէ բանդիւ (2) զարկից էնու որտի մէջ, բայրաղ վիրիցիւց, գնացին մէյդան։

Բայրաղ օր տարան մէյդանի մէջ, Հմանըտուն քեաշւան էլան տիւս։ Էտունք գնացին ուրենց Թագաւուրի կուշտ, Գոդարդն էլ ուր Թագաւուրի կուշտ։

## Դ.

Բահրամ ուր տաժան (3) կուրսեր էր։

Էնու աղբէր կէր, անուն Գեւ. աղբոր ասաց՝

— Իմ տաժան կորուսիր ի։

Գիւն ասաց՝

— Ի՞նչ էնիս տաժան, էրթանք տունի, քիզի արծըթէ տաժան կ՚չինիմ։

(1) Ցեղի. — (2) Բացի. — (3) Ցոլ խաղալու փայտ.

Ասաց՝ — Ես էն տաժանայ կասաֆաթ չիմ անը (1)․ իմ անունը վերէն գրիւկ ի, պտի ասեն՝ Բահրամ տաժան Թողեր փախերի։

Օր մթուց, էրկու սհաթ գիշերւան մօտէն գնաց, Բահրամ զինք զեողցաւ, գնաց մէյդան յիտիւ ուր տաժանին։ Գնաց տեսաւ օր՝ մէկ տքիւցմ կ'գեայ․ ասաց՝

— Տիւ վո՞վ իս։

Ասաց՝ — Բա՛հրամ, իս իմ։

Ասաց՝ — Ռա՛հոլ, տիւ՞ իս։

Ասաց՝ — Հա՛, իս իմ։

Ասաց՝ — Ի՞նչպէս իս։

Ասաց՝ — Նարալու իմ․ կանա՞ս ընձի տանիս, բալքի ժրիմ (2)․ էտ-տեղ մեռամ՝ կ'մեռնիմ։

Ռահոլն ասաց՝

— Բա՛հրամ, տիւ զո՞ր կէրթաս։

Ասաց՝ — Իմ տաժան մնացի մէյդան, կէրթամ բերիմ։

Ասաց՝ — Մի՛ էրթա, փահլիւան Գիւլօ քառսուն փահլիւանի խետ յէռջիւ քիւ տաժանին պախուած ի։

Բահրամ ականջ չիդի, գնաց․ կենայ (3) տքիւցմ էկաւ․ ասաց՝

— Տիւ վո՞վ իս։

Ասաց՝ — Իս Ռահըբն իմ (4), Բա՛հրամ։

Ասաց՝ — Ի՞նչպէս իս։

Ասաց՝ — Նարալու իմ․ օր ընձի տանիս՝ բալքի ժրիմ․ օր ըստեղ մեռամ՝ կ'մեռնիմ։

Բահրամ էն էլ Թողից գնաց․ կենայ մէ տքիւցմ էկաւ․ ասաց՝

— Տիւ վո՞վ իս։

Ասաց՝ — Ես Ցէժիրն իմ, նարալու իմ․ օր ընձի տանիս, կը մրիմ։

Գնաց մէյդանի մէջ․ ուր տաժանն կնտաւ (5) տոն ոքերէն (6) խանից, ձեռ Թալից, տաժան վիրիցիւց։ Գիւլօն քառսուն փահլիւանի խետ էտու եախէն բռնիցին, ինչ բռնիցին, ինչղ տիւ դամուր Թալիս կրակ, կարմրնայ, խանիս ղնիս ղնդանի վրէն, ուստէք կռանով զարկին, էնենց գիւրղ կ'գեայ Բահրամի վերէն։ Բահրամ մէկ ձեռնեով մարտալ (7) էր բռնիր էնուէնց գիւրղիրու յիռջիւ, մէկ ձեռնեով կռիւ կանիր էտուէնց խետ։

Էն փահլիւան, ընչ անուն Բեւչիլ, ասաց՝

— Վո՞վ ի տիսի՝ քեառսուն փահլիւան մէկ փահլիւանի վերէն կռիւ անեն։ Ես էլ Իրանայ փահլիւան եմ, ես էլ էրթամ Բահրամին քոմակ ընիմ, ձեղի զարկիմ։

---

(1) Չեմ հոգայ։ — (2) Առողջանամ։ — (3) Դարձեալ։ — (4) Ռահոլ, Ռահըբ եւ Ցէժիր երեքն էլ Բահրամի եղբայրներն են եւ Գոդարդի որդիքը։ — (5) Գտաւ։ — (6) Ասպանդակ (արաբ.)։ — (7) Վահան։

Թեւչիլ ոքէր ղարկից քեարքեադանին (1), գնաց Բահրամի մօտ կայնաւ ասաց՝

— Բա՛հրամ, քիւ քեամակ տու ընձի, իս էկայ հընդաթ (2), գիւշմանի խիտ կռիւ անինք։

Բահրամ իրիք հեղ մօտէն եկրար (3) տուաւ, էնիկ յիրդիւմ տաւ՝ էկամ քի հընդաթ։

Բահրամ քեամակ տւից Թեւչիլին, գիւրզմ ղարկից Գիւլօյին. Թեւչիլ կանգնաւ այարի վերէն, Թուրմ Թալից Բահրամի Թիւրին՝ Բահրամ ձիուց էկաւ տակ։ .

———

Գեւ կան էկաւ, Բահրամ չ'տեսաւ։

Գնաց խօր ասաց Թէ՝ Բահրամ կորուսի, չէրեւայ. Բահրամ գնաց յետեւ տաժանին, կըլնէ որ սպանած ի։

Գեւ յէլաւ սիլահնիր կապից, քեարքեադան խեծաւ, գնաց յետեւ աղբօր։ Խէլի գնաց տեսաւ՝ ոքիւցմ կ'գեայ. ասաց՝

— Տիւ վո՞վ իս։

Ասաց՝ — Իս Ռահօլն իմ. կարա՞ս ընձի տանիս, քալքի մըիմ. օր ըստեղ մնամ՝ կ'մեռնիմ։

Գեւ Թողից գնաց։ Ռահըլին ռաստ էկաւ, ասաց՝

— Ի՞նչպէս իս, ա՛ղպէր։

Ասաց՝ — Շատ եարալու իմ, էստեղ մնամ՝ կ'մեռնիմ։

Գեւ Թողից գնաց Ցէժիրին ռաստ էկաւ։

Ասաց՝ — Տիւ վո՞րն իս։

Ասաց՝ — Ցէժիրն իմ։

Ասաց՝ — Տիւ Բահրամ չի՞ս տեսիր։

Ասաց՝ — Բահրամ գնաց յետեւ ուր տաժանին. չուր կէսգիշերին անուշ ձէն կ'գէր, կէսգիշերու ժամանակ քոռուց էղաւ մօտէն. սպանին՝ չիմ գինայ, բանին էլ՝ չիմ գինայ։

Գեւ գնաց մէյդան։ Գիւլօն, քառսուն փահլիւան էլան Գեւի եախէն բռնին. Գեւ մէկ գիւրզ ղարկից Գիւլօյին, քեարքեադանից վար իրիւ, յէջաւ Թուր Թալից վիզ կտրից։ Էտա քառսուն փահլիւան յէտջիւ Գեւին փախան. Գեւ ընկեաւ յիտիւ, քառսուն փահլիւան մէ մէկ սպանից։ Մընաց մէկ փահլիւան՝ Թեւչիլ։ Փախաւ զինք Թալից Ալւաստայի Թախտ-ատւանի (4) յատէջ. Գեւ բռնից, էտուր Թարք չ'աւից, խասաւ քեալբանդ (5) Թալից բռնից, քեաշից՝ Թագաւուր Թեւչիլ խարաա (6) կ'տանէր։

Էտա կօչուն թիԹուն կայնան Գեւի խիտ կռիւ արին, անջախ Թագաւուր ձեռնէն խանին, պրծուցին։ Թեւչիլն տարաւ, գնաց քիրից Բահ-

(1) Պատմողի բացատրուԹեամբ՝ «Ոնգեղջիւր» է նշանակում։ —(2) Օգնութեան։ — (3) Խօք։ — (4) Տարժական գահ է պատերազմի ժամանակ։ — (5) Թեամանգ։ — (6) Միասին։

րամի ջանդկի վերէն, էնտեղ Քեւչիլի վիզ կտրից ։ Բահրամ Թալից ուր Թարք, Ցէժիր Թալից ուր յառէջ, Ռահըք Թալից մէկ եան, Ռահօլն էլ մէկ եան, տոից նկաւ չադրներ ։

## Ե․

Քեւ Խոսրէն մնաց չիւար ։ Բոնից Տիւս Նաուզար գնդանից խանից, էտու լաւ քեարքեադան ուից, լաւ չուր ուից, լաւ սիլահ ուից, յրող-ղից գնաց Ռոստամի մօտ ։

Ռոստամ իրիչկաց օր Տիւս Նաուզար էկաւ, ասաց՝

— Խէր ըլնի, քիւ Թագաւուր յերգիւմ էր արէր, քի (1) Թալիր իր գնդան, գնդանից չէր խանի քի ․ յընչի՞ քի ճամբխիրի էստ տեղ ։

Տիւս Նաուզար ասաց՝

— Էնտեղ օր տիւ չէղնիս, մենք յընչի՞ խամար ինք, Թագաւուր յընչի՞ խամարի ․ մէ ծաղիկ օր կայ՝ տիւ իս ։

Ռոստամ ասաց՝

— Իս էլ յերգիւմ իմ արի, օր իս Թագաւուրի իրիս չ'տեսնիմ ․ իս էնու տուն պտի չէրթեմ ։ Ամա ընձի ափսուս էկաւ ․ Գոդարզ, իմ քեռու տղէք մնացեր ին կուռւ մէջ ․ քիւ խաթրը խամար, իմ քեռի Գոդարզի, պտի գամ Թագաւուրի խամար մէ կռիւմ անեմ ։

Ռոստամ կօչուն բիթուն ժողվրդից, սաքսան խազար չադըր յընկիր յիրար, յըմեն չադըր սաքսան խազար փահլիւան ։ Տիւս Նաուզար վերցուց բայրաղ դրից վըր ուր թիւնի, Ռոստամ ուր կօչունով գնաց Թագաւուրի մօտ, Նրկու օրդին խառւաւ իրար ։

Ալւասիաւ ասաց դիւլըրնքչուն (2)՝

— Դի՛ւլըրնքչի, քիւ դիւլբին ա՛ռ գնա՛ սարի գլոխ, յըրըչկա՛ տեսնանք Իրանայ Թագաւուր բարչիլու խիտ ի , փախիլու խիտ ի, Թէ կռւու ։

Դիւլըրնքչին դիւլբին առից գնաց սարի գլոխ նստաւ, յըրըչկաց տեսաւ՝ էրկու օրդին էղեր էր մէկ ։ Տեսաւ էտուց չադրներ՝ մէկ չադր Ցընկի, Պըլընգի (3) , Խլիւման , Կէսաւուր , Մաղրարի , Շա՛նգա՛ռի , խէյւան կապուկ չադրը յառէջ՝ Ռոստամի Ռախշէ-Բալաքն (4) է ։ Դիւլըրնքչին վարգանդ բռնից էնտեղ, յէլաւ գնաց Ալւասիայի մօտ ։

Ալւասիաւ խարցուց արաւ, ասաց՝

— Դի՛ւլըրնքչի, ի՞նչ կայ ։

Ասաց՝ — Թա՛գաւուր, սաքսան խազար չադըր էտուց յաւըլցիր ի, Իրանայ կօչունից մարդ վարգանդ կ'բռնի ։

— Թագաւուր ասաց՝

— Հմա՛ն, ի՞նչ կասիս, Շա՛նգա՛ռի չադրը տէր ի՞նչ մարդ է, Ռախ-չէ-Բալաք մի՞ կայ (5) ։

(1) Քեզ ։ — (2) Թշնամու բանակը դիտող ։ — (3) Վագր ։ — (4) Ռախ ։ — (5) Ու՞մն է ։

— Ցաւալ քի տոխմ՝ բա՛ն չունիս Իրանայ խիա․ էն վո՞վ է՝ Ռոստամն է։

Թագաւոր իրեն արաւ Փիրանին. ասաց՝

— Փի՛րան, տու ի՞նչ կասիս։

Փիրան ասաց՝

— Իս ի՞նչ կասիմ․ կըլնը որ մէկ բազըկան եան մէկ մարդմ Թաղդադայ տեղէն էկիր չադրներ էնտեղ զարկիրի։

Թագաւոր ասաց՝ — Փիրան աղէկ վուցիր ի։

Ընդիւց Կղակղաէ Զինին ասաց՝

— Թա՛գաւոր, ընչի՞ կ՛վախենաս, հալբաթ ընձի մէկ փանկիւան կայ որ էրթայ էնու գլխու կարի բիրի քզի խամար։

Խլիւսիւն (1) չիւս բացաւ։ Մէկ փանկիւան, անուն Կղէլիւն, էլաւ խնծաւ ուր քեարըքեադան, ուր գուրզ առից գնաց մէյդան, գիւրզ զարկից գետին, թող խանից գետնից, ասաց՝

— Իս Ռոստամի դիւշման իմ, իս Ռոստամէ կռիւ կուզիմ։

Ռոստամ վի կացաւ, կապից ուր Թուր-քէրմանին, մարապղն Ռախշի կողէն կախից, այար դրից, տայնքիր կքից, էլաւ Ռախշ խնծաւ ասաց՝ էրթալ իմ, գեալ՝ Աստըծուն։

Զեռ Թալից՝ իրեք խարիր վաթսուն վեց լիտր էնաւ գիւրզն էր. վըրցից դրից ուր Թիւփ վրան. քըշից չադրներու դանէն ընցաւ։ Ցեռբալու մարդիր աեին Ռոստամին՝

— Հիմաթով (2) գնա՛ էտա մարդու կռիւ։

Ռոստամ էնտեղ Ջրիւտուաւ, Ռախշից իջաւ վար, ուր սիլաններ բիթուն, ուր գիւրզ Թողից Ռախշի վերէն, Ռախշ դարձըցաւ չադրնիր, զինք ուր նիա անեղ առից գնա՛ց մէյդանի մէջ։

Կղէլիւն ասաց՝

— Բեզի սիլահ (3) բալքի չունէր, քիւ Թագաւոր ընչի՞ քի սիլահ չ՛ուից տիւ գէր իմ կռիւ անէր․ տիւ իմ անուն չէ՞ր լսիր։

Ռոստամ ասաց՝

— Իմ Թագաւոր ասաց՝ կէրթաս Կղէլիւնը կռիւ, ի՞նչ հուճայ է (4)․ որ տիւ սիլահ տանիս էրթաս Կղէլիւնը խիա կռիւ անիս։ Գնա՛ Կղէլիւն սպանի, էնու սիլաններ քի խամար բի՛։

Կղէլիւն էնտեղ մէկ գիւրզ Թալից Ռոստամին․ Ռոստամ զինք եան էտու՝ դիւրզ դպաւ գետին։ Ռոստամ չոքիր զարկից գետին, մէկ նիա անեղ զարկից էն փանկիւանի քեարըքեադանի սրտի մէջ, էնու անեղի նիա սրտից զարկից տիւս էլաւ․ ուխտ սհաթի ճամբախ էր չուր Թագաւորի օրդին՝ Ռոստամի նիա գնա՛ց դպաւ Խագաւուրի Խախտ-Թաւաւանին։

Կղէլիւն ասաց՝

---

(1) Հեռնեւեալ առաւօտ։ — (2) Զգուշութեամբ։ — (3) Զէնք (արաբ.)։
(4) Պէտք է։

— Տիւ ընչի՞ զարկիր իմ քեարքեադան ապանիր ։

Ասաց՝ — Ո՞րն է տեսիր ձիաւուր փիատէն (1) կռիւ անեն․ իս էլ փիադայ, դիւ էլ փիադայ, իս ու տիւ զարկինք մէ մէկու ։

Էնտեղ էրկու փահլիւան խառան յիրար․ Ռոստամ Կզէլիւնին վի-րիցիւց զարկից գետին, չոք զարկից սրտի վերէն, Թուր քաշից վիղ կտրից, տարաւ ուր Թագաւորի համար ։

## Գ․

Ալւտախայ ասաց՝

— Փի՛րան, էսա նիտ վի՞րն էր, որ կղանի կիգեայ էսա տեղ ։

Ասաց՝ — Վո՞վ գիտէ․ Բաղդադայ տեղէն մէկ ծուռ մարդմ ի նետիր կղարկի, կղեայ էսա տեղ ։

Ասաց՝ — Հմա՛ն, տիւ ի՞նչ կասիս ։

Հման ասաց՝

— Ցառաջ որ քի ասիմ՝ բա՛ն չունիս Իրանայ հիտ․ էն վո՞ղն է՝ Ռոստամին է ։

Փիրան ասաց Թագաւորին՝

Ի՞նչ վախեցար, մէկ փալիւան (*) է ապանիր․ ընձի հալրաթ մէկ փալիւան կայ էրթայ Շա՛նզա՛ռի չադրը տիրիւչ գլեոխ կտրի բիրի ։

Մէկ փալիւան, անուն Աչքապիւզ, խլլուբուն խեծաւ ուր քեար-քեադան, գնա՛ց մէյդանի մէջ, ասաց՝

— Ես Ռոստամի կռիւ կուզիմ ։

Կենայ Ռոստամ էլաւ, ուր քեարքեադան խեծաւ՝ էրթայ Աչքապիւ-զիւ կռիւ ։ Զադրներու դռնէն ընցաւ՝ եարալուք կենայ կանչին Ռոստա-մին ասին՝

— Հիմաթով գնա էսա մարդիւ կռիւ ։

Ռոստամ ջիւրուէւաւ, Ռախշէ Բալաքից պայա էլաւ (2), ձին բրա-խից, նիտ անեղ առից գնա՛ց կռիւ ։

Աչքապիւզն ասաց՝

— Ո՞վ մարդ, քիւ անուն ի՞նչ ի, տիւ իմ անուն չի՞ր լսիր, որ փիադայ էկար իմ կռիւ ։

Ռոստամ ասաց՝

— Իս իմ չիմ գինայ․ իմ հէր Զալ ընձի գրեր էր ուր չոքի վրան, ընձի կը խաղցնէր կասէր՝ «Տիւ Աչքապիւզի գրեողն իս, պիտի էրթաս էնու խոգին առնիս» ։

Աչքապիւզ մէ գիւրզմ զարկից Ռոստամին․ Ռոստամ զինք եան տւից՝ գիւրզ գպաւ գետին ։ Ռոստամ չոքիր տւից գետին, մէկ նիտ անեղ

---

(*) Շատ անգամ պատմողը հ-ն չէր արտասանում ։ — (1) Հետիոտ ։ — (2) Իջաւ (պարսկ․) ։

զարկից էնու քեարքեաղանի սրաին՝ կմնայ նիտն գնա՛ց Թագաւուրի Թախտ-Թառաւանին դիպաւ, մնաց մէջ։

Էրկուս էնտեղ փիադայ խասան յիրար, կաւան․ Ռոստամ Աչքաղիւ-զին վիրէցիւց զարկից գետին, էտու գլեոխ կարից, տարաւ ուր Թա-գաւուրի խամար։

## Է․

Մէկ փալիւան կար, անուն Քամիւսէ Քեաշան։

Քեամուսէ Քեաշան խմծաւ ուր քեարքեաղան, էկաւ Ռոստամի կռ-ուիւ․ էկաւ մէյդան ասաց՝

— Ես Ռոստամի կռիւ կուզիմ։

Ռոստամ էլաւ խմծաւ Ռախշ, կապից ուր Թուր, վիրէցիւց ուր մարտալ, ուր մէջ զարկից մէ ալմաստի խանչալ, ձեռ Թալից ուր գիւրզ, վիրէցիւց գրից Թիւէ վրան, ասաց՝

— Էրթալ իմն ի, գեալ՝ Աստըծունն։

Էկաւ չաղրնիրով ընցաւ։ Նարալաք կմնայ րաին՝

— Ռոստամ, էտա փալիւան չատ ղոչաղ ի, մաղխաթով (1) գնա էնու կռիւ։

Ռոստամ կմնայ ջիւրատաւ, ուր սիլահնիր Թալից, ուր քեար-բանդ առից գնա՛ց մէյդան։

Քամիւսէ Քեաշան ասաց՝

— Ռոստամ, տիւ իմ անուն չի՞ր լսիր՝ տիւ էկար իմ կռիւ։

Ռոստամ ասաց՝

— Իմ Թագաւուր հրաման էրաւ՝ Քամիւսէ Քեաշան չ'աղանիս, ատղ բանիս բիրիս ընձի խամար։

Քամիւսէ Քեաշան գիւրզմ զարկից Ռոստամին․ Ռոստամ մարտալ չէր բիրիր, որ դնէր յիռջիւ գիւրզին․ էնու ձին Ռախշ գլեոխ ածից գիւրզին՝ ոսկի խնձիւր Ռախշի ճակատն իր, գիւրզ դիպաւ ճակտի մէջ, ոսկի խնձիւրն կտուրաւ, երուն Թափաւ Ռախշի քնԹէն։ Ռոստամ քեար-բանդ Թալից Քամիւսէ Քեաշան բանից։

Քամիւսէ Քեաշան ասաց Ռոստամին՝ — Էտի ընձէ իր սովրած։

Էն էլ Թալից Ռոստամ բանից․ էն քեաշից, Ռոստամ քեաշից․ էնիկ զօռն Ռոստամին առաւ։ Ռոստամ տեսաւ որ էնու ղուաԹ (2) էնու չի յաղԹի, քեարբանդ ուր սրաէն խանից, Թալից Ռախշի սիրտ, ոքէր ուից Ռախշի կող, Ռախշ քեաշից զՔամիւսէ Քեաշան բիրից։

Քամիւսէ Քեաշան Թուր քաշեր էր կ'զանէր քեարբանդին, որ կտրէր փախէր։ Ռոստամ ասաց՝

(1) Զգուշութեամբ։ — (2) Ոյժ։

— Քամիւսէ Քեաչան, վով որ ընկիր ի էգ քեարբանդի մէջ, էն չի պրծիր․ ես քի չիմ սպանի՝ տիւ. ափսուս ես, քի պտի տանիմ, քեասսուն ջարի (1) ունիմ, Թօփուզով զարկին քըլի սպանին։

Քեաչից տարաւ չադրնիրու մէջ․ ջարիք Թօփուզնէր առան էկան գլխու վերէն զարկին էտեղ սպանին։

## Ը․

Ֆըրազամ (2) ասաց՝․

— Ռոստամ, էսկանդար կօչուն մեզի կայ, էսկանդար կօչուն Թիւրանայ Թագաւորին կայ՝ որ կ'գեայ մէյդան, քիւ կռիւն կուզի։ Մենք քանի տարի ըստեղ բայլամիչ անինք (3), որ էստ կռիւ պրծնի։ Նոբաթ (4) իմն է, ես էրթամ կռիւ։

Ֆըրազամ խեծաւ, Ռոստամն էլ խեծաւ, Բրզուն էլ խեծաւ, Գոդարզըն էլ խեծաւ, Գեւն էլ խեծաւ, Սիաւոշն էլ խեծաւ, Սիափոշն էլ, Մախուսան փաշէն, Բաղդադայ ոլին, Քէւ Խոսրէն։ Ասքեար բիթուն կայնան․ Տիւս Նաուզար բայրաղ վիրեցիւց՝ ասքեար քեաշւաւ։

Ազօթրանին բռնեցին Ալւասիայի չադրնիրու վերէն, կռիւ էլաւ իրեք օր գիշերն ցերեկ․ մըջ դիւման կայնաւ էրկնիւց իրիսն բռնից։ Շատ մարդ ասաց՝ աշխարն աւիրաւ․ միծ (5) մարդիր ըսին՝ Իրանայ Թագաւոր Թիւառւան յիրար, Թող դիւման ընտրանց յառէջ կէնի։ Հրիշտակնիր յէրկնիւց կայնան Թամաշայ։

Իրեք օր որ լըմացաւ՝ Թիւրանայ Թագաւոր փախաւ․ Իրանայ Թագաւոր, Ռոստամ, Ֆըրազամ ընկեան յիտըւան, օխտ օր ճամբախ քէշին, օխտ քեաղաք զաւթին․ Թիւրանայ մեծիր տիւս խանին, Իրանայ պստիկ տեղ դրին, էրին միծաւոր (*)։

---

— (1) Աղախին։ — (2) Ռոստամի որդին է։ — (3) Սպասենք։ — (4) Հերթը։ — (5) Խելօք։ — (*) Այս վարիանտն բաւական մօտ է իւր պարսկական բնագրին, ինչպէս մենք կարդում ենք Ֆիրդուսու «Արքայից Գրքում», չ'նայելով, որ քրդական խմբագրութիւնն առաջ է բերել մի շարք փոփոխութիւններ թէ բովանդակութեան եւ թէ յատուկ անուանց մէջ։

*Սուրմալի գաւառի (Երեւան. նահանգ) Մոլլա-Ղամար գիւղի բնա-կիչ Գ ր ի գ ո ր Խ ա չ ա տ ր ե ա ն ը մօտ 40 տարեկան առոյգ դէմքով տղամարդ է. ունի լաւ յիշողութիւն. Նա մեզ պատմեց մի շարք հետա-քրքիր աւանդութիւններ եւ հեքեաթներ, ի թիւս որոց Դաւթի եւ Մը-հերի մի ընդարձակ վարիանտ։ Արհեստով սափրիչ է։ Ռուստամի եւ այլ հերոսների գրոյցները նա լսել է Հոռոմցի (Աղէքսանդրապ. գաւառ) Ղոր-ղանից, որ երկաթագործ էր եւ շատ անգամ այցելում էր գործով Մոլ-լա Ղամար։ Նա իւր ժամանակի յայտնի հեքեաթ ասող էր։*

## Ռ ը ս տ ա մ։

*Ռըստամը Զալի տղէն էր։ Էթում էր խարաջ (1) առնէր Դեւստու-նից։ Գնաց օր՝ մէ դեւ սպրկած այ. ասաց՝*

*— Ցըլնեմ էրկու ոտով զարկեմ էս դեւին թող մէջքը կոտրւի։*

*Ցէլաւ վըր դեւի քամկին. դեւն ասեց՝*

*— Էս տեղը լըւոտ է։*

*Ձեռը թալեց Ռըստամին բռնեց, խփեց ոտի տակը, իրէչկեց օր՝ Ռըստամ լալում այ, յաչքերից արուն այ գալում, ասեց՝*

*— Ռըստամ, յընչի ես լալում։*

*Ասեց՝ — Իմ կնիկն էրկու խոզով այ։*

*Ասեց՝ — Ռը՛ստամ, օր ես քեզի թողեմ էթաս, օր քո կնիկդ տղայ բերեց, կողորկե՞ս (2) գայ իմ խետ կուէի։*

*Ասեց՝ — Հա՛։*

*Թողեց Ռըստամին, Ռըստամն էկաւ տուն. յուխտ արեց, յիր դուր-զըն, յիր քեամանն (3) քցեց բերդի տակ, ասեց՝*

*— Նալլաթ ըլնի էլ իմ ձեռը չառնեմ, ես յաղթուայ։*

## Ֆ ա հ ր ա մ ա զ։

*Ցէլաւ օր ըստու տղէկներն՝ Ֆահրամազ ու Բուրզէ՝ ըստու գուրզ ու քեամանի վրէն կռիւ են անում. էն մէ տղէն ասում էր՝ ընձի, էն մէ-կըն էլ ասում էր՝ ընձի։*

*Ասեց՝ — Ո՛րդիք, յարէք ես ձեզի ասեմ. գնացէք խեծէք ձեր ձի-անքն, էկէք. ես իմ սէհրիխազալը (4) թողում եմ, դու ձեր քեամանը քցէք, որը որ սէհրիխազալը բռնեց, գուրզը կ'տամ ընդուր։*

*Սէհրիխազալը թողեց. ըստնք յիրանց քեամանները քցին. էն ինչ Բուրզու քեամանն էր՝ տկով ընցաւ (Բուրզէն ջահէլ էր). էն ինչ Ֆահ-րամազինն էր՝ էնի փիչ մնաց որ յընկնէր վիզը։ Ֆահրամազն իրեք օր գիշեր ցերեկ խրեղէն ձինը քշեց սէհրիխազալի յետեւ, գնաց յընկաւ մէշէն։*

---

(1) *Հարկ*։ — (2) *Կ'ուղարկես*։ — (3) *Քամանդ (պարան)*։ — (4) *Սէհրի = կախարդական (պարսկ.), խազալ =* gazelle *(արաբ.)*։

Գիշերը ուեց վրէն․ մութն էր։ Իրիշկեց որ՝ զառանից (1) մէ կը-րակ այ էրեւում․ յինքն էլ շատ անօթցեր էր։ Ձինը քշեց գնաց դըխ էտ կրակը․ տեսաւ որ՝ մէ քոռ դեւ այ, մէ յաչքանի, նստէ կրակի կուշտը վէրու (2) օչխարներ մորթէ, մըսեր կտոր կտոր արէ, քցէ վըր կրակին։ Ծանրամազն էն քոռ աչքի դեխից մէ կտոր գողցաւ։ Որ կերաւ, դեւը տեսաւ՝ մէ կտոր չկայ․ ասաց՝

— Գո՛ղ, դու ինչ նամարդ (3) ես, արի նստի հա կէ՛։

Ծանրամազն էկաւ դեւի կուշտը, ասաց՝

— Դեւ աղբէր, ես անօթի ի, վախեցայ քեզանից։

Դեւն ասեց՝ — Ընչի ես վախենում, հա կէ (4)։

Նստան խըտ յիրար, կերան․ լուս բացուաւ, ասաց՝

— Դեւ աղբէր, դու յընչի ես ըստեղ բնակուէ։

Դեւն ասաց՝

— Ես Տաղմուրադ Շահի (5) ազգից եմ փախէ, էկեր եմ ըստե, որ ըննացքեց մէկն յընկնի ձեռս, սըպանեմ։

Ծանրամազն ասաց՝

— Ես ընտաց խետը ջըռբըլեր եմ (6)․ արի դու էլ ջըռբըլենք, յըլ-նենք յընկեր։

Ասաց՝ — Ձեռդ տու իմ ձեռքին։

Ծանրամազ ձեռը ուեց դեւի ձեռին․ դեւը ճխտեց՝ Ծանրամազի ձեռը սկի չը ցաւաց։ Ծանրամազը դեւի ձեռը ճխտեց՝ արուն մատներից ուեց դուս։

— Ամա՛ն, ասաց, ձեռս կոտրաւ, թո՛ղ։

— Ես Տաղմուրադ Շահի թոռն եմ, ձեռնէդ ինչ որ կուգայ, արա՛։

Դեւն ասաց քի՝ — Աղբէր, ես մեղայ Աստծու․ էթանք էս քա-ղաքը պտտելու։

Ծանրամազ խեծաւ ձին, յընկաւ դեւի յառէջ․ մէ խէլի (7) տեղ քը-շեցին, Ծանրամազ տեսաւ՝ յիր ձին հա չըքւում այ (8)․ ասաց՝ հալբաթ դումլաղ այ (9)։ Մէ խէլի տեղ էլ քշեց, որ զանգուն զարբով զարկեց՝ ձինը պատռուաւ․ չխոկաւ իրիշկեց որ՝ դեւը մէ սէհրի դիր այ կար-դում․ զարկեց դեւին սըպանեց, չըլկեց յիր թամքը, գնաց էդ քաղաքը։

Քաղաքը թագաւորանիստ էր․ գնաց քաղաքի յաղբրի վրէն թամքը դրեց տակը նստաւ․ մէ պառաւ էկաւ ջուրը լցելու․ ասաց՝

---

(1) Հեռուից։ — (2) Վայրի։ — (3) Խարդախ։ — (4) Ոդիսեւսի ար-կածների արձագանքն լսւում ցայսօր ոչ սակաւ արեւելեան զրոյցներում։ Կասկած չկայ, որ Կիկլոպների («ղարապեղների» = միաչքանի հսկաներ) եւ զանազան հրէշների մասին զրոյցներն մի ժամանակ աւելի տա-րածուած էին Փոքր Ասիայում, եւ միայն Ցունաց ստեղծական ոգուն էր վիճակւել գեղարուեստօրէն մշակել այս աւանդութիւններն եւ ազգային վիպասանութեան աստիճանին հասցնել նոցա։ — (5) Ըստ Ֆիրդուսիի՝ այս դիւամարտիկ արքան Հուշենգի որդին է եւ Ջեմշիդի հայրն։ — (6) Փոր-ձւեր եմ։ — (7) Բաւական։ — (8) Խրւում է։ — (9) (Հողն) փափուկ է։

— Որդի ջան, յընչի ես նստէ էս յաղբրի վրէն։

Ասաց՝ — Մա՛մէ ջան, զարիբ եմ, ծանօթ չունեմ։

Ասաց՝ — Ո՛րդի, արի էրթանք մեր տուն։

Ցանրամազ թամքը շըլկեց գնաց պառաւի տուն։ Գիշերը քնան, յառաւօտ յէլան օր՝ դալալ (1) այ բռռում քաղաք. Ցանրամազ խարցրեց պառւին՝

— Մա՛մէ, էս ի՞նչ դալալ այ։

— Ասաց՝ — Թագաւորի իլխին էթում այ ծովի ղրաղը. ծովից մէ ջանաւար այ յըլնում, թագաւորի ձիանք լցնում այ ծովը. Թագաւորի դալալը բռռում այ՝ որն որ էն ջանաւարը բռնի, իմ աղջիկ կը տամ ընտուր։

Ասեց՝ — Մա՛մէ ջան, ես կէթամ խըտ իլխուն։

Ցանրամազ գնաց խըտ իլխուն։ Կէսաւուր տեսաւ օր՝ ծովը բացւաւ, բէ բոզ ղուրաղ ծովից յէլաւ յընկաւ ձիանքի յետեւ, լարեց, իրեք ձի կոխեց ծովը։ Ցանրամազ դարձաւ էկաւ թագաւորի մօտը, ասաց՝

— Թա՛գաւոր, քու աղջիկ կուտա՞ս ընձի, որ ես էն ջանաւարը բռնեմ։

Ասաց՝ — Կտամ։

Ասաց՝ — Գնա՛ պողպըտից 40 գեազանոց ընձի մէ քեաման շինել տու։

Թագաւորը գնաց 40 գեազանոց մէ քեաման շինել տւեց պողպատից. առաւօտ Ցանրամազ քեամանը քցեց թեւ, խըտ իլխուն գնաց. գացին ծովի ղրաղը։ Կէսաւուր մօտ տեսաւ օր՝ ծովը բացւաւ, ղուրաղը դուս էկաւ ծովից։ Ցանրամազ քեամանը քցեց, ըցկեց ղուրաղի վիզը. ղուրաղ քաշեց, Ցանրամազ քաշեց ղուրաղին խեղդեց, բերեց հանեց չօրը, տարաւ էկաւ քաղաք։ Թագաւոր տեսաւ օր՝ էսի ձի այ։

Ցանրամազն ասաց՝

— Մէ թամք բե դի վըր էս ձիան, տեսնանք իմալ այ։

Թագաւոր ինչ թամք օր բերեց, չէկաւ վըր ձիան. Ցանրամազն ասաց՝

— Թա՛գաւոր, մէ իմն թամք ընձի պառաւի տունն այ, յըղկրկա՛ էրկու ջհէլ, թող առնեն գան։

Թագաւորն ղրկեց էրկու ջհէլ, առան էկան. Ցանրամազ թամքը դրեց վըր ձիան, գեամը զարկեց բերան, ասեց՝

— Թա՛գաւոր, քեզի փէշքէշ։

Թագաւորն ասեց՝

— Ո՛րդի, բաշխի քեզի, ես էսի չեմ կանայ խեծնի։

Ցանրամազ խեծաւ ձին, մէ էրկու գլոխ գնաց էկաւ. էկաւ ձիանից յիջաւ. ձինը քաշեցին նեռ, թագաւորն սկսեց Ցանրամազի խարանիս, աղջիկը տւեց Ցանրամազին։

(1) Մունետիկ։

Ցանրամազ մէ իրեք ամիս էտ աղջկայ կուշտը մնաց․ յետի յիրան յիրան միտ արեց, ասաց՝

— Ես Տաղմուրադ Շանի փանլեւաններ թողի էկա ըստեղ։

Գաղտուկ կնկան ասեց՝

— Ես քո կուշտը քներ եմ, դու կը մնաս էրկու խողով․ առ քեզի մէկ բազբանդ տամ․ ես կէթամ, իմ անունըս մի՛ տա, ես Ուրստամի որդէն եմ․ թէ որ աղջիկ կըլնի՝ էս բազբանդը թուջարի խետ խուրոէք թող աղջիկն ուտայ․ թէ որ տղայ կըլնի՝ կապէք վըր թեւին։

Ցանրամազ թողեց էկաւ Տաղմուրադ Շանի քաղաքը (*)։

## Թ Ե Հ Մ Ո Ւ Ր ։

Թագաւորի աղջիկն ընտեղ մնաց․ ինն ամիս օր թըմամ՝ պարկաւ մէ տղայ բերեց։ Թագաւորն էկաւ կնքելու, անունը դրեց Թ է հ մ ո ւ ր։

Թէհմուրին պախեցին, էլաւ տաս տարեկան, շատ ուժով տղայ դուս էկաւ։

Տաղմուրադ Շանի քաղաքը Ուրստամ Ա ր շ ա կ Ն ր ա ն ե լ ի ն առփեց․ խռովաւ Արշակ Նրանելին, գնաց Ցանրամազի անէր թագաւորի քաղաք, թագաւորին ասեց՝

— Ընձի զօշուն տու, ես էթամ Տաղմուրադ Շանի փանլեւաններ աղթեմ, անեմ քեզի խարաջի գեօղալ (1)։

Թագաւորն զօշուն տւեց Արշակ Նրանելուն տաս հազար ջան, արեց էրկու տեղով, մէկի սարաւքեարն (2) Թէհմուրն էղաւ, մէկին էլ Արշակ Նրանելին։

---

(*) Այս հատուածն, որտեղ գլխաւոր հերոս է հանդիսանում Ցանրամազ, մօտ յիշեցնում է մեզ Ռուստամի արկածը Սեմենգան քաղաքի թագաւորի մօտ։ Ըստ Ֆիրդուսու՝ մի անգամ Իրանի համբաւաւոր հերոսն՝ որսորդելիս՝ հանգիստ է առնում Սեմենգան քաղաքի մօտերքն, արձակում Ռախշին եւ ինքը քնում։ Քնի ժամանակ գողանում են նժոյգը․ արթնելով, նա երկար որոնում է իւր ընկերոջն եւ ապա դիմում Սեմենգանի տիրոջն, սպառնալով նորա փանլեւաններին, եթէ չ՚գտնեն Ռախշին․ Թագաւորն, ճանաչելով Ռուստամին, խոստանում է կատարել նորա խնդիրը եւ հրաւիրում նորան իւր մօտ։ Գեղեցկուհի Տեհմինէն (Թագաւորի աղջիկն), հրապուրուած հերոսի հռչակից եւ ցանկանալով նորանից որդի ունենալ, գիշերը գալիս է նորա մօտ եւ առաջարկում նորան իւր սէրն։ Ռուստամ չէ մերժում։ Հետեւեալ օրը նա ստանում է իւր նժոյգն եւ վերադառնում տուն, ընծայելով Տեհմինէին մի թանկագին քար․ «Եթէ աղջիկ ծնեցիր, ասում է նա, սորանով զարդարիր նորա մազերն, իսկ եթէ որդի՝ կապիր նորա ձեռքին»։ Մեր վարիանտներում առհասարակ Ռուստամ բնաւ կորցրել է իւր հռչակը, նորան փոխարինում է արդէն Ցանրամազն, որին ժողովուրդը սիրով վերադրում է նորա հօր արկածներն։ Այսպիսի փոխադրութիւններ, որ կապուած են նոր հերոսի անուան հետ, նկատելի են առհասարակ բոլոր ազգերի դիւցազնական վէպերում։ — (1) Հարկատու։ — (2) (Պարսկ.) գլխաւոր, զօրապետ։

Էկան Տաղմուրադ Շահի տունը, չադրներ զարկին նստան սենեակ մէջը․ Թէհմուրի մէր խնտան էկեր էր։ Գիր գրեցին Ռըստամին՝ քի՝ վախտիդ (1) հազիր կաց, մեր կռիւ կռիւ այ։

Ցառաւօտ Բուրզին խեծաւ յիր ձինը, յիր գուրզն առաւ ձեռ, յիր ղալխանը, էկաւ մէյդան։ Թէհմուրն Արշակ Երանեկլուց իրաւունք առաւ քի՝ ես կէթամ կռիւ։ Արշակն ասեց՝ գնա՛։

Թէհմուրն էկաւ Բուրզու խնտան առան յիրար, կռւան մինչի կէսաւուր․ Բուրզին տեսաւ օր՝ յինք յաղթւաւ, ասաց՝

— Իգի՛թ (2)։

— Ի՞նչ այ, ա՛ղբէր։

— Էթանք հաց ուտենք, մեր ձիանքն էլ դինջանան, էլի գանք կռւենք։

— Շատ լաւ կըլնի։

Բուրզին չիտկւաւ դըխ բերդն, Թէհմուր ձինը խաղցրեց մէ ջրենդ թալեց Տաղմուրադ Շահի քոչքի վրեւով ընցրեց։ Զալ նստած էր վըր թախտին․ որ ջրնդի ձէն առաւ, ասաց՝

— Էյվախ, էս իմ ազգի թալած ջրենդն այ․ իմ ազդ բերած իմ խետ կռւեցնում են․ մենք կաղթւենք։

Թէհմուրը դարձաւ գնաց յիրան չադըրը, աշպազը (3) հաց բերեց, կերաւ, դինջացաւ, խեծաւ ձինը, էկաւ կայնաւ մէյդանը․ տեսաւ օր՝ մարդ չկայ․ Բուրզին էլ գնացեր էր պարկեր էր։ Դարձաւ էկաւ յիրա չադըրը յիջաւ։

Ցառաւօտ լուսը բացւաւ, էկաւ Արշակ Երանեկլուն ասաց՝

— Ցէսօր ես էլի կէթամ կռիւ։

Ասաց՝ — Գնա՛, Տէրը խըտ քեզի։

Էկաւ մէյդանի գլուխ կայնաւ․ Ռըստամն յէլաւ փահլեւաններին ասաց՝

— Գնացէ՛ք, դուշման էկէ մէյդան կայներ այ։

Ֆահրամազն յէլաւ խեծաւ ձին, դուրզն առաւ ձեռ, էկաւ․ էկաւ մէյդնի գլուխ, դիպան յ՚իրար․ մինչի կէսաւուր կռւան։ Յաղթւաւ Ֆահրամազ, ասաց՝

— Ի՛գիթ։

— Ինչ է։

— Էթանք հաց ուտենք, մեր հայւաններն էլ դինջընան, գանք էլի կռւենք։

— Լա՛ւ կըլնի։

Ֆահրամազ դարձաւ գնաց դըխ քոչքը, Թէհմուր ձին խաղցրեց, մէ ջրենդ թալեց քոչքի վրեւով ընցրեց․ Զալն ասեց՝

— Էյվախ, էյվախ, էս իմ ազգի ջրենդն այ, նոր չի յաղթւի։

---

(1) Ժամանակիդ։ — (2) Քաջ։ — (3) Խոհարար (պարսկ.)։

Թէհմուրը զարձաւ էկաւ յիրա չադրրը․ հաց կերաւ․ խմծաւ ձին, էկաւ մէյդան․ էնքան ձին խաղցրեց, էլ մարդ չէկաւ ։ Փահրամազն էլ գնեց տեղով բարձով պարկաւ ։ Թէհմուր զարձաւ էկաւ քնաւ ։

Լուսը բացւաւ, Թէհմուր էլի յէլաւ գնաց Արշակ Երանեկու չադրի դուռը կայնաւ, սաաց՝

— Ես կէթամ կռիւ ։

— Գնա՛ , Տէրը խըռ քեզի ։

Էկաւ մէյդանի գլուխ կայնաւ, ձին խաղցրեց․ Զալ հարցրեց՝

— Ո՞րն է էթում կռիւ ։

Ասեցին՝ — Մարդ չկայ, մնացեր այ Ռըստամը ։

Ռըստամն ասեց՝

— Ես քսան տարի է իմ գուրզ թողկեր եմ ։

Ասեցին՝ — Պէտք այ էթաս, ճըլլաճ չկայ ։

Ռըստամը յէլաւ խմծաւ ձինը, դողզղալով գուրզը վեկալեց, էկաւ մէյզանն որ՝ Թէհմուր ձինն խաղցնում այ ։ Հասան յիրար, մէ հրկու գուրզ թալեցին յիրար, Ռըստամն ասեց՝

— Ի՛գիթ, ես բան եմ մոացէ տունը, էթամ բերեմ գամ ։

Փչեց էկաւ տունն, ձիուց յիջաւ, լալով պարկաւ ։

Թէհմուրը խէյլի կայնաւ՝ չէկան․ մէ ջրինդ թալեց քոչքի վրեւով անցրեց ։ Զալն սաաց՝

— Էյվա՛խ, էյվա՛խ, էս իմ ազգի ջրինդն այ, էս իմ թագաւորութուն կվերջանայ ։

Էկան Նասան Զալն ու Ռըստամ մէ անէծքով թուղթ գրեցին Արշակ Երանեկուն, տւեցին մէ տղայ տաաւ գնաց ։ Արշակ Երանեկին տաաւ թուղթը կարդայ որ՝ փահլեւաններն յըմէն վերջացրեր այ Թէհմուր․ սաաց՝

— Ես էս ինչ բան էր արեցի ։

Ցէլաւ յիրա դռնապանին թամխեց (1) թէ՝

— Որ էգուց Թէհմուրը գայ ․ ասէք թէ՝ էլի մէյդան քունն այ, գնա՛ ․ ես բեքէֆ (2) եմ ։

Էկաւ Զալի թախտը, վերցրեց յիր գուրզ քեամանն, յիր ձին խեծաւ, յառաւօտ լուսը բացւաւ էկաւ մէյդան կայնաւ ։ Թէհմուրն էլ էկաւ մէյդան, առան յիրար , էնպէս ին կռւում, որ կրակ բամիչ էր անում (3) էրկսին ։ Թէհմուրն վախենում էր, որ դրղի կտորներից աննի մօրը մնայ, յաչքը վըր մօրն էր պահում ։ Արշակը գուրզը զարկեց, տաաւ Թէհմուրի վզին, Թէհմուրը յընկաւ․ Արշակն յիջաւ, եամ փուչախին (4) խանեց, որ վիզը կտրէր, մէր դռալով էկաւ՝

— Ի՞նչ ես անում , Արշակ, էտի քո աղբօր տղէն այ ։

Արշակն ասեց՝ — Բր յու՞ր այ մեր նշանը ։

---

(1) Պատւիրեց ։—(2) Ինձ վատ եմ զգում ։—(3) Պատում ։—(4) Դաշոյն ։

Մէրն էկաւ թեւը բացեց որ՝ Ցահրամազի բաղբանդը վըր թեւին այ։ Արշակը խանեց կայնըցրեց, յերեսները պաչեց, տուաւ էկաւ Ռըստամի ու Զալի մօտ, ասեց՝

— Էսի Ցահրամազի տղէն այ։

Զալն յերես պաչեց, Ռըստամն յերես պաչեց. ուրախացան վրէն, յիրան մօրը պախեցին, ղօշունին իղին տուին, գնաց յուր տէրութուն (*)։

## Բուրզի։

### Ա.

Ռըստամ Զալը նստան կանչին փահլեւաններին, ասեցին՝

— Դեւստունի խարաջը մացեր այ եօթը տարի (1)։

Բուրզին էկաւ կայնաւ օրթալաղ, ասեց՝

— Տուէք ընձի ազգական Բէջօն (2), որ վալադ ըլնի ես էթամ դեւստուն։ Ես օր գնացի դեւստուն, ինչ վախտ որ ես նեղութենի մէջ կընկնեմ, կոիւ կ'պատահի ընձի, իմ ձինս գետին կ'քանդայ՝ դուք դուրզը քեամանը կապէք վըր ձիան, գայ հասնի ընձի։

Ցէլաւ գնաց ազգական Բէջօյի խետ։ Գնացին մէկ ձօրի ափին նըստան. Բէջօյին ասաց՝

— Ես կը քնեմ, իմ քունս գալում այ, դու նստի ղարաւուլ (3)։

Բուրզին քնաւ. Բէջօն նստաւ ղարաւուլ։ Մէ ցերեկ Բուրզին քընաւ։ Բէջօն տեսաւ օր՝ էրկու դեւ են գալում ձօրի մէջովը, մէ հայոց աղջիկ էլ փախցրած այ։ Էկան տեսան օր՝ մէ մարդ ձօրի ափին քարի վրէն քնած այ. աղջիկը ղրին յէրի (4) մէջը, քեամանը սարքեցին քցին Բուրզու ոտները։ Ընքան ճչաց Բէջօն, Բուրզին չիմացաւ. կայնաւ վըր Բուրզու ղօշին, յանկըջներից քաշեց, ճչաց. Բուրզին յիմացաւ, յէլաւ ասեց՝

---

(*) Արշակ անունը ժողովրդական աւանդութիւններում մեզ առաջին անգամ է պատահում. ենթադրել, թէ այստեղ պահպանուած լինի Արշակունեաց տոհմի որ եւ է մէկի յիշատակը՝ դժար թէ հիմնաւոր լինէր։ Պատմողը ինքն չկարողացաւ բացատրել «երանել» բառը, որ նա երկու անգամ «երանալ» արտասանեց. «երանալ» ժողովրդի բերանում գեներալ = «զօրապետ» է նշանակում։ Կարծում եմ, թերեւս այս անուան հետ կապւած լինի յայտնի հայ գնդապետի՝ Արշակ Տէր-Ղուկասեանի՝ յիշատակն, որի գործունէութիւնը գլխաւորապէս Երեւանեան նահանգում էր կեդրոնացած եւ որի անունը մինչեւ այժմս անմահ մնում է ժողովրդի մէջ։ Նա այստեղ երեւի փոխարինում է մի այլ հնութեան հերոսի, որ իւր բոլոր հետաքրքրութիւնն կորցրած պիտի լինի ժողովրդի համար։ Այսպէս են կերպարանափոխւում դիւցազնական գրոյցներն։ — (1) Այսպէս սովորաբար սկսւում են եւ ռուսաց վիպական երգերն, ռուսամենայնի, հետեւելով արեւելեան գրոյցներին։ — (2) Պարսից այս նշանաւոր հերոսը, շնորհիւ իւր ժողովրդականութեան, յիշւում է եւ մեր Դաւթի վարիանտներում, իբրեւ հերոսի հօրեղբայրը։ — (3) Պահապան։ — (4) Այր։

— Ի՞նչ ես տեսում, Բէջօ, չես թողում քնեմ։

Ասաց՝ — Քո տունով քանդուի, հըլը իրիշկա՛ ։

Իրիշկեց որ՝ դևեր քեամանն կապած յիրանց մէջքերը ըստոր քաշում են. ձեռը քցեց քեամանից բռնեց, էրկու դևն էլ քաշեց հանեց ղայի (1) գլոխ, էրկուի գլոխն էլ ջարդեց։ Ցէջաւ Բէջօյի խետ, էկան աղչկան գըտան. աղչկան ասեցին՝

— Ձեր դեղը յու՞ր այ։

Ասեց՝ — Էս դքի (2) վրէն այ։

Ասեց՝ — Բեղի բը դևեր յու՞ր .ին տանում։

Ասեց՝ — Էկան ընձի իմ խօր տնէն զոռով փախցրին։

Աղչիկն յընկաւ աղաքներ, առաւ ըստնց էկաւ հօր տունը. Նստան, յիրիկուն հաց բերեց հէրը, հաց կերան։ Բուրզուն Բէջօյին ասեց՝

— Աղնաւուրներ (3), ես ի՞նչ տամ ձեզի։

Բուրզին ասեց՝

— Մենք բան չենք ուզում քեզնից. գևստուննի ճամբախը տաւ մեզի նշանց։

Ցէլաւ էտ մարդն մէ մարդ քցեց ըստնց յառէջը, տարաւ Դևէ Փնդիպօլադի (*) քաղաքը ուեց նշանց, յետ դարձաւ։ Բուրզին Բէջօն էկան Դևէ Փնդիպօլադի օթևանը։ Ցիրիկուն նստան, էնի յիրա մարդիկը կանչեց. հարցրեցին Բուրզուն թէ՝ — Ցընչի ես էկէ։

Ասեց՝ — Էկեր եմ եօթ տարուայ խարաջը պէտք այ տաք։

Դևէ Փնդիպօլադը ասաց՝

— Ես քո խետ կուիւ կանեմ, չեմ տայ։

Բուրզին ասեց՝

— Ցառաւօտ յըլնենք կըռւենք։

Ցառաւօտ Բուրզին յէլաւ մէյդանը (4), գնաց էկաւ. ընգոց տունը ձինն գետին քանդեց։

Ռըստամն ասաց՝

— Բուրզին կուի այ, գուրզը քեաման կապէք վըր ձիան թռ էթայ։

Կապեցին, գնաց ձին. ձինն էկաւ խասաւ Բուրզուն. Բուրզին յէլաւ ձինը խեծաւ։

Դևէ Փնդիպօլադին մէ գեղեցիկ քուր ունէր. բերեց դրեց քէջովի (5) մէջը, կայնըցրեց մէյդան, յինք խեծաւ ձին, էկաւ Բուրզու յաղաք, կուան մէյդանի մէջը։ Բուրզու յաչքը առաւ էդ գեղեցիկ աղչկան. չիտկւաւ աղչկան իրիշկեց՝ Դևէ Փնդիպօլադը թուրը զարկեց Բուրզու թիւն ևարալու արեց. Բուրզին չիտկւաւ Դևէ Փնդիպօլադի վրէն. Դևէ

---

(1) Ժայռ։ — (2) Բարձրաւանդակ։ — (3) Մեծաւորներ։ — (4) Մէյդան (պարսկ.) առհասարակ նշանակում է հրապարակ. դիւցազնական զըրոյցներում իբրև կռւի ասպարէզ։ — (5) Կառք։ — (*) Դուցէ Յունաց «Պենտապոլիս» քաղաքն է այստեղ յիշւում։

Փնդիպօլադ փախաւ մտաւ մէջէն․ Բուրղին ձինը քշեց յետեւ, խասաւ Թուրը զարկեց գլխին․ Դեւէ Փնդիպօլադը փախաւ մտաւ ծառի բօղը (1), վրէն կուրսաւ։

Ձինը Բուրղուն փախցրեց բերեց Չէչնագիրայ Ա լ է ք ս ա ն Թագաւորի յաղբրի վրեւից հանեց դուս։ Ջուրը տեսաւ Բուրղին, յիջաւ, ձինը ըսեղ յորուկեց (2), յինքն էկաւ ջուրը խմելու։ Ջուրը որ խմեց, ջուրը Բուրղուն տարաւ, խելքը գնաց, յընկաւ մէջ յաղբրին, յաղբրի ջուրը էլաւ յարուն։

Ալէքսան Թագաւորն յիրան մէ քուր ունէր, անունը Ս ա լ ւ ի Խ ո ւ ր է մ ա ն․ Թագաւորն ասաց՝

— Գնա՛ մէ ջուր բե խմեմ։

Սալւի Խուրէմանն էկաւ ջրի, իրիշկեց որ՝ ջուրը արուն այ գալում․ էկաւ ասեց Թագաւորին՝

— Թա՛գաւոր, արուն այ գալում ջուրը։

Ասեց՝ — Աւչիք (3) աւ այ զարկած, էկէ յընկեր այ յաղբրի ակը, էթանք հանենք։

Յէլան գնացին՝ Թագաւոր Սալւի Խուրէման․ գացին տեսան որ՝ մէ մեծ մարդմ յընկեր այ յաղբրի մէջ․ ասաց Սալւի Խուրէմանին՝

— Գնա՛ իմ Թուրը բե, ես ըստու վիզը կտրեմ։

Սալւի Խուրէմանն ասաց՝

— Թա՛գաւոր, էսի ափսոս մարդ այ, դու ստուր օյամիշ արա՛ (4), ես ստու եարէն սաղցնեմ, էսի ու րիշ Թագաւորներ քեզանից խարջ ուզելուն ընտոց խեար կը կուի։

Թագաւորը փանզըհար (5) տւեց, Բուրղին օյամիշ էղաւ․ առան Բուրղուն, ձիանը, էկան տուն։ Թագաւոր հարցըրեց՝

— Դու ի՞նչ մարդ ես։

Ասեց՝ — Ես Տաղմուրադ Շահի Թոռն եմ։

— Քո անունը ի՞նչ այ։

— Իմ անունը Բուրղի այ։

— Դու կմնա՞ս ըստե, ես քո եարէն կ՚սաղցնեմ, Սալւի Խուրէման քուրս էլ կտամ քեզի։

— Ասեց՝ — Ես յօժար եմ, Թա՛գաւոր։

Սալւի Խուրէմանի մատնիքը աւեցին Բուրղուն, Բուրղին մնաց ըսեղ։

Բ.

Դեւէ Փնդիպօլադին ունէր մէկ սիրող, յինք սէհրիբազ, անունն Մ ր ջ ա ն է Ջ ա դ օ․ սարերը սէհր էր անում 40 աղչկայ հետ։ Դեւէ Փնդիպօլադը միան յընկաւ, յէլաւ աղչկներ վերցրեց քի՝

---

(1) Ճեղքը։ — (2) Բխովեց։ — (3) Որսորդներ։ — (4) Ուշքի բեր։ — (5) Դեղթափ։

— Ես էթում եմ իմ սիրողի կուչտ։

Էկաւ Դեւէ Փնդիպօլադի կուշտ տեսաւ որ՝ Դեւէ Փնդիպօլադ տուն չի․ հարցրեց՝

— Դեւէ Փնդիպօլադ յու՞ր այ։

Ասեցին՝ — Տաղմուրադ Շահի թոռն էկաւ հետը կուաւ, լարեց տարաւ, չգիտացանք ինչ արեց։

Ցէլաւ ռամը քցեց, տեսաւ որ՝ Դեւէ Փնդիպօլադ մէչի մէջ ծառի բօղն այ։ Սէհրի ձիանքը խեծան դնցին Դեւէ Փնդիպօլադին խանեին, բերեցին ուր օթեւան։ Նստաւ Մրջանէ Ջաղօն, ռամը քցեց, ասաց՝

— Տեսնամ էն ի՞նչ թաւուր մարդ այ, որ քեզանից ղոչաղ այ։

Ռամը չցեց որ՝ Չէչնապիրայ Ալէքսան Թագաւորի քաղաքն այ․ յէլաւ սէհրի ձիանքը խեծաւ, գնաց գիշերւայ մէ վախտը դուռը ծեծեց․ դուռը բացեցին, մտաւ ներս։ Բուրղին ասեց՝

— Դու ո՞րն ես։

Ասեց՝ — Ես Մրջանէ Ջաղօն եմ։

— Ընչի՞ ես էկե։

— Էկեր եմ քեզ տեսութիւն, դու ի՞նչ թաւուր մարդ ես։

— Բարի ես էկե։

Մրջանէ Ջաղօն ասեց՝

— Ձուր յէսօր ես Դեւէ Փնդիպօլադի սիրողն իմ, ըստով դէն ես քեզի սիրող կըլնեմ։

Ասաց՝ — Իմ թեւը խարալու այ, ընձի ժամանակ չունեմ։

Ասաց՝ — Էդ ի՞նչ մատանիք այ քո մատը։

— Սալըի Խուրէմանի մատանիքն այ։

— Ըստով դէն Սալըի Խուրըէմանին չես թողէ քո բոլոր գայ․ ես քեզի մէկ ամիս մոհուլ (1) տեւցի, էթում եմ սարերը, ամսով յետ կ'գամ, ես քունն եմ, դու իմն ես։

Ցէլաւ մատնիքը խանեց ուեց Սալըի Խուրէմանին․ Մրջանէ Ջաղօն սէհրի ձիանք խեծաւ յէլաւ սարեր։ Սալըի Խուրէման էկաւ էլի մատանիք ուեց Բուրղուն, թեւի եարէն սաղցրեց, մտան մէ սեղի մէջ, քնան։

Ամիսը օր թըմաւ, Մրջանէ Ջաղօն աղչկների հեա սէհրի ձիանք խեծան, կէսաւուրն էկան հասան․ էկան տեսան որ՝ Բուրղին Սալըի Խուրէմանն մէկ տեղի մէջ քնած են։ Մրջանէ Ջաղօն ասեց՝

— Բը դու ասում իր՝ ես Սալըի Խուրէմանին էլ չեմ տանէ, դու ընձի խափու՞մ իր։

Սէհր արեց (2), ղալամը բէհուշ (3) զարկեց, Բուրղին բէհուշ էլաւ․ քցեց վըր սէհրի ձիանքին, տարաւ Դեւէ Փնդիպօլադի դիւանի մէջը։ Դեւէ Փնդիպօլադին ասաց՝

(1) Ժամանակ։ — (2) Կախարդեց։ — (3) Ուշաթափ (անելու նըպատակաւ)։

— Դուշմանդ չաայ բռներ եմ բերեր եմ։

Դեւէ Փնդիպօլաղը յէր մարդիկը ժողւեց, ասեց՝

— Ցարէք տանանք ի՞նչ էք ասում։

Ասեցին՝ — Թա՛գաւոր, էս մէկն որ սըպանենք, էլ չկա՞յ Տագմուրաղ Շահին փանլեւան, գուգան մեզի կը ջնջեն։

Մրջանէ Զաղօյին ասեց՝

— Ես ըսսուր չեմ սըպանէ, ինչղ բերեր եմ, էլ էնմալ տար։

Մրջանէ Զաղօն վերցրեց գրեց մէր ստերի ձեռնքին. տարաւ Սալւի Խուրէմանի օթախը գրեց, օյամիչ արաց, Սալւի Խուրէմանին կանչեց, ասեց՝

— Էսայ դու, էս էլ քո նշանած։

Ցենքը խառվաւ գնաց սարեր։

Գ.

Ալւանուղմագ Թագաւորը յինք ուժով Թագաւոր էր. յիմացաւ որ Ալէքսան Թագաւորին մէկ սիրուն քուր ունի, ղաւաղները ղրկեց Ալէքսան Թագաւորի մօտը, ասեց՝

— Սալւի Խուրէմանին պէտք այ տաս ընձի։

Սալւի Խուրէմանն լսաց, էկաւ Բուրդուն ասաց՝

— Իմ աղբէրս մէ բէբախտ մարդ այ, ընձի տալումայ Ալւանուղմագ Թագաւորին։ Ցառաւօտն պէտքայ էթան ղաւաղները. դու գնա ճանապարհին յառըջները կտրա՛, ընդոց ձեռի թուղթն առ ճղա՛, մէկը սպանա՛, մէկը թօ էթայ ջուաբ տանայ։

Ցառաւօտ Բուրդին էլաւ տեսաւ որ ղաւաղներ էթում են. յընկաւ յառեւներից խառաւ, ղաւաղի մէկը սըպանեց, թուղթը ձեռներեց առաւ ճղեց, յինք մէկ թուղթ գրեց, ասեց՝ «Ինչքան որ ղուաթդ կաղթայ, ղօշուն բեր»։

Ղաւաղը գնաց հասաւ Ալւանուղմագ Թագաւորին։ Թուղթն առաւ կարդաց, ղօշունն բիրառի (1) ժողւեց էկաւ Ալէքսան Թագաւորի սենառի բոլորը բիրառի փաթթեց։

Ալէքսան Թագաւորը յէլաւ որ՝ ղօշունն էկեր այ. էկաւ Բուրդուն ջուաբ (2) տուեց, ասեց՝

— Բու՛րդի, էս ղօշունը գո՞ւ ես բերե։

Բուրդին ասաց՝

— Ես բերեր եմ, ես էլ կջարդեմ։

Բուրդին յէլաւ ձին խեծաւ, տուեց էդ ղօշունի մէջը, կէսը ջարդեց, կէսը փախաւ։ Գողառուկ գիր գրեց Ալւանուղմագ Թագաւորը Ալէքսան Թագաւորին, ասաց՝

---

(1) Բոլորը։ — (2) Ջուաբ (պարսկ.) = պատասխան։ Հայերն երբեմն գործ են ածում յուր նշանակութեամբ։

— Բուրղին որ կայ՝ ջուր այ. կէթայ․ մենք որ կանք՝ աւազ ենք, կմնանք․ արի ըտու գլուխը մէ օղխամ խանենք ։

Բերեցին գիշերը Բուրղուն մէյդանի մէջը մէ քառսուն քեազանոց խոր փորեցին, քառսուն գեազ լէնքը, քառսուն գեազ յէրկէնքը․ խորի վրէն ծածկեցին ։

Առաւօտ Ալւանուզմազ թագաւորի էն միւս ղօչունը էկաւ կայնաւ մէյդան․ Ալէքսան թագաւորը ջուաբ բերեց Բուրղուն, ասաց՝

— Էլի ղօչուն այ էկէ ։

Բուրղին յէլաւ ձին խեծաւ, գնաց մէյդանի գլուխ, ձինը չէր էթում․ զանդուն որ զարկեց ձիան, ձին յիրան թալեց, յառաջի ոտները հասաւ էն տեղի ղրաղը, փրծաւ ձինն, յընկաւ մըջ խորին (*)․ ձինը սատկաւ, Բուրղուն բռնեցին, թեւերը կապեցին, տւեցին եօթ հատ դեւի, տարան ծովի կղզին, մէ քարէ խոր կար, քցեցին էն քարէ խորի մէջ, մէ ջաղցի քար էլ դրեցին բերան, եօթ դեւ էլ կայնան ղարաւուլ ։

Էկան որ Սալւի Խուրշմանին տանին․ Սալւի Խուրշմանն ասաց՝

— Ես աղու (1) կը խմեմ, չեմ գայ չուր քառսուն օր ։

Դ.

Ռըստամ գիշերը քնաւ, տեսաւ որ՝ Բուրղին յընկեր այ մէ ծովի մէջ, ձկներն ուզում են Բուրղուն կըլցնեն (2)։ Ցէլաւ յառաւօտը լացաւ, առաւ աղգական Բէջօյ, էկաւ չուռ գալու (3)։ Էկաւ Դեւէ Ղօփի կուչտը, հարցրեց ասաց՝

— Դեւէ Ղօփ, իմ տղէս կուրսւեր այ․ որ տեղն տես, քեզի մէ խազնայ կտամ ։

Դեւէ Ղօփն ասեց՝

— Խազնայ մի տայ, դու յորդըւա՛՝ որ էլ Նարայ (4) չքաշես, ես էթամ քո տղէն բերեմ ։

Ռըստամը յորդըւաց՝ որ էլ Նարայ չքաշի, քանի սաղ այ․ եօթ հատ ղորանոց քար Դեւը դրեց մըջ մէ ջւալի, կապեց քամակ, մէկ հատ պարսեա թալեց թեւ, Ռըստամին ասաց՝

— Քո տղէն Սեւ ծովի կղզին այ, եօթ մարդ քո տղին ղարաւուլ այ․ ես էթում եմ․ թէ իմ եօթ պարսեափ ձէնն էլ լսացիր՝ ես էն եօթ դեւին էլ կը սըպանեմ, կառնեմ քո տղէն գուղամ ։

Դեւէ Ղօփ յընկաւ ծովի երես գնաց ։ Գնաց, էն եօթ դեւն էլ էկան վըր Դեւէ Ղօփին․ եօթը պարսեափց քարով եօթն էլ սըպանեց, գնաց ջաղցի քարը վերցրեց դրեց դէն, ձէն տւեց Բուրղուն, ասաց՝

(*) Այս միջադէպը (հորի մէջ ընկնելը), սաստիկ տարածուած լինելով Պարսից աւանդութիւններում, սոցա ազդեցութեան տակ ընդունւել է եւ Ռուսաց (Իլիայ Մուրոմեց) եւ Հայոց (Դաւիթ) գիւցազնական վէպերին ։ (Տե՛ս մեր Առաջաբանը) ։ — (1) Թոյն ։ — (2) Կուլ տան ։ — (3) Գորելու ։ — (4) Նարայ (պարսկ.) = ճիչ ։

— Բո՛ւրղի, սա՞ղ ես։

Ասաց՝ — Սաղ եմ։

Ասաց՝ — Ես էկեր եմ քեզի խանեմ։

Ասաց՝ — Դէ կախա՛ գայ չրխը։

Չրխը կախեց, գնաց խորը մէջը։ Բուրղին չրխը կապեց յուր մէջքը։ մէ թեւով քաշում էր Դեւէ Ղօփը, քանի թեւի ղուաթ (1) կար, քանձրցնում էր, մէկէլ թեւը չկէր, որ փոխէր, էլի թողում էր յընկնում էր տեղը։

Բուրղին ասեց՝

— Տունդ աւերի, ընձի սըպանիր։

Ասեց՝ — Ես ինչ անեմ, ես մէ թեւանի եմ։

Ասեց՝ — Ըտեղըանք փէտ կա՞յ։

Ասեց՝ — Կայ։

Ասեց՝ — Մէ փէտ դիր վըր խորի բերնին, չրտի ճոթն (2) թող գայ ընձի։

Չրխի ճոթը թողեց գնաց Բուրղուն։ Բուրղին չրտի ճոթից բռնեց, Դեւ մէ չրտի ճոթից քաշեց, Բուրղին մէկէլ, քաշեց հանեց դուս։ Բուրղուն չկեց, բերեց ծովից խանեց դուս։ Բերեց ուեց Ռըստամին, ասեց՝

— Էսայ քո աղէն։

Ռըստամը Դեւից շատ շնորհակալ էղաւ։ Ռըստամը թողեց էկաւ յիրա տունը, Բուրղին յէլաւ գնաց Չէչնագիր Ալէքսան թագաւորի քաղաք, գնաց Սալէի Խուրէմանի մօտը։ Սալէի Խուրէմանը լացաւ, Բուրղուն ասեց՝

— Քառսուն օր մոհլաթ եմ առէ, եօթնսունը գացէ, մացեր այ տաս օր։

Բուրղին ասեց՝

— Իրեք աւուր մէջ էրկու թագաւորն էլ կը ջնջեմ, ես կը մընամ, դու։

Ըէլաւ գնաց Ալաննուզմազ թագաւորի երկիրը աւիրեց, էկաւ Ալէքսան թագաւորին սըպանեց, տղին դրեց թագաւոր։ Գնաց դեւատունի եօթ տարուայ խարաջը ժողվեց առաւ էկաւ, Սալէի Խուրէմանին վեկալեց տարաւ էկաւ Ռըստամէ Զալի քաղաք։ Ռըստամն եօթ օր եօթ գիշեր Բուրղու հարսնիս արաց, խասցրեց յիրան մուրազին (*)։

---

(1) Ղուաթ (արաբ.) = ոյժ։ — (2) Ծայրը։ — (*) Այս վարիանտը, չնայելով իւր աղաւթեան եւ մի քանի պակաս տեղերի միւս երկու վարիանտների հետ համեմատելիս, այնուամենայնիւ իւր հիմնական մասերով նոցա համապատասխան է։ Թղթուրէ Շէրանի բացառիկ թիւնը այստեղ, կարծես, ապացուցանում է, որ այս գրոյցը բոլորովին առանձին է եւ միայն Գըղերի մէջ նա ենթարկուել է արհեստական ձուլման։

## Ղաթըլ Ղահրաման.

### Ա.

Դեւստունը մասլահաթ արին, ասեցին՝

— Գնացէք Տաղմուրադ Շահի ազգից մէ քոռփայ ճիժ գողացէք բերէք, պախենք չոչցընենք, յիրանց խետ կռուըցնենք, որ յիրանց յաղթենք։

Էկան էրկու դեւ Ռըստամի բաղի մէջը տափան։ Ռըստամի տղէն Ղ ա թ ը լ Ղ ա հ ր ա մ ա ն մէկ տարեկան էր. տղի պահապանն տարեր էր բաղն, դրեր էր ծառի տակը, յինք բաղի մէջ ման էր գալում։ Դեւերը գողացան, առան փախան, տարան դեւստուն (*)։

Մինչի ութը տարի պախին դեւստունի մէջ։ Ութը տարին որ թըմամ, յէլնում էր գեղի մէջ դեւերի տղէրքի խետ խաղում էր, որի որ ձեռ տալում էր՝ թեւն էր կոտրում, գլխին ձեռ տալում էր՝ յանկաջն էր խանում։ Դեւերը մասլահաթ արին, էրկու դեւ խանեցին քի՝ տառէ՛ք քեաւշան։ Զորս տարի քեաւշանը պախեցին։ Էլաւ տասուերկու տարեկան։ Մէ օր էրկու դեւի խետ նստան վըր մէ յաղբրի խաց ին ուտում. դեւը կղաւ ջուր խմեց, Ղաթըլ Ղահրամանն էլ կզաւ ջուր խմեց, իրիչկեց որ՝ իր քիփաթ (1) դեւին մէկ չի. դեւին ասեց՝

— Ընչի ես դու մէկ չենք,

Ասեց՝ — Ես ինչ գինամ։

Ասեց՝ — Սաղն ասա՛, քեզի կը սըպանեմ։

Էն մէ դեւը սաղը չասեց, ընդուր սըպանեց. էն մէ դեւին բռնեց ասեց՝

— Սաղն ասա՛, քեզ էլ կը սըպանեմ։

Ասեց՝ — Դու Տաղմուրադ Շահի ազգից ես։

Ասեց՝ — Դէ յէլի ընձի տա՛ր։

Դեւը խափեց Ղաթըլ Ղահրամանին, բերեց թողեց մէչէն, յինք վըրէն կուրսաւ. Ղաթըլ Ղահրաման մնաց մէչի մէջ չուռ գալով. էկաւ իրեք խատ ծառ կապեց յիրար, յէլաւ վրէն, գիշեր պարկում էր քնում էր, ուտելիքն ինչ էր՝ վերու օխշար էր. չորերը յըմեն կըտուաւ, վերու փոստերը կապում էր յիրա ջանը, յէլէր էր մէ ջանաւարի հաչըի։

---

(1) Երես։ — (*) Արքայազն մանկանց առեւանգումը դեւերից, ինչպէս երեւում է, բաւական տարածուած նիւթ էր դեռ հին Հայաստանում. Մովսէս Խորենացին առաջ է բերում մի քանի զրոյցներ Արտաւազդի (Արտաշիսի որդու) մասին, ի թիւս որոց եւ հետեւեալն՝ «Ի ծնանելն զսա (Արտաւազդ) դիպեալ պատահարաց ինն. զոր համարեցան կախարդել զսա կանանց զարմիցն Աժդահակայ… եւ զայս նոյն երգիչքն յառասպելին ասեն այսպէս. եթէ վիշապազունք գողացան զմանուկն Արտաւազդ, եւ դեւ փոխանակ եդին». (Խոր. Գիրք Բ, Գլ. ԿԱ)։

Գիշերը դնած էր վըր իր քեաթիչին․ մէ քեարքեաղան էկաւ, որ էդուր քեաթիչից յիջըցնէր սըպանէր․ մէկ փէտ օլըրեր էր, արեր էր յիրան քեաման․ քցեց քեարքեաղանի վիզը․ քեարքեաղանը ասեց՝

— Ես էլայ քեզի ձի, ընձի մի՛ խեղդա։

Քեարքեաղանը խեծնում էր էթում էր աւղուչ։ Մէ օր կրակն յընցեր էր․ տեսաւ օր զատ տեղից չաղըր են էրեւում․ քեարքեաղանը խեծաւ գնաց ըտոնց բարեւ տւեց, ըտոնք չառան, չխասկըցան, խառւան յիրար։ Ղաթըլ Ղահրաման գիտցաւ՝ պէտք այ յիրան զարկեն․ մէ ծառ քաշեց քօքից խանեց, առաւ յընկաւ ըտոնց մէջը, ըտոնց կէսը ջարդեց, կէսը փախան․ էկան ջուաբ բերին Ռըստամէ Զալին, ասեցին՝

— Մէկ էսպէս ջանաւար մարդ մէ ջանաւար էլ խեծէր էր, էկաւ մեր ղօչունի մէջ ղըլըըլցրեց, մենք չ'խասկցանք․ ծառը քաշեց մեզի ջարդեց։

Ռըստամին մէ դեւ կար, անունը Դեւէ Սարխաբ․ ղուլուղ (1) էր անում Ռըստամին․ ասաց՝

— Էնի դեւ լիզու ձեզի բարեւ այ տւէ։

Ռըստամն ասաց Դեւէ Սարխաբին՝

— Ցառաւօտ յէլի ղօչունի հետ գնա՛։

Ցառաւօտ յէլան ղօչունը, Դեւէ Սարխաբն էլ խետը, գացին։ Գացին էն տեղը էլի չադրները դրեցին նստան։ Ղաթըլ Ղահրամանը տեսաւ որ՝ էլի մուխ այ յէլնում էն տեղից․ խեծաւ քեարքեաղան, ծառը քաշեց էկաւ․ էկաւ բարեւ տւեց դեւի լիզու․ Դեւէ Սարխաբն ըտու բարեւն առաւ։

Ասեց՝ — Ես յէրէկ էկայ ըտոնց բարեւ տւի, ըտոնք իմ բարեւը չառան, ուզում են ընձի զարկին, ես էլ ընդոնց զարկի։

Ասեց՝ — Դու ի՞նչ մարդ ես։

Ասեց՝ — Ես Տաղմուրադ Շահի աղցից եմ։

Ասեց՝ — Քո անունը ի՞նչ այ։

Ասեց՝ — Իմ անունը Ղաթըլ Ղահրաման այ։

— Արա յընչի՞ ես էկե ըստե։

— Դեւերն ընձի քոփայ վախտ ղողցած բերած այ։

— Դու Ռըստամի տղէն ես․ էրէկւայ քո ջարդածը ձեր ղօչունն այ։

Ղաթըլ Ղահրամանը լացաւ․ տարան Ղաթըլ Ղահրամանին, դարձան էկան Ռըստամէ Զալի քաղաքը։ Տեսաւ որ՝ քաղքի մէ եանը (2) տների մրէն սեւ այ քաշած․ Դեւէ Սարխաբին ասաց՝

— Էս յընչի մէ եանը սեւ այ քաշած։

Ասեց՝ — Քո յէրէկւայ սըպանած մարդիկն են։

Լացաւ Ղաթըլ Ղահրաման, ասաց՝

---

(1) Ծառայութիւն։— (2) Կողմ։

— Իմ խերը շատ ղօլայ (1) մարդ այ․ յէրէկից յէսօր յընչի ընդոց սեւը չէ վերցնում այ։

Տղէն բերեցին․ Ռըստամը տեսաւ, ուրախացաւ վըր տղին, չօրերը փոխարկեց տղի․ էրկու մարդ բերեց, տղէն տւեց էն էրկու մարդին քի՝ իմ տղին հայերէն լիզուն կը սարւացնէք։

Էրկու տարւայ մէջը մարդիկն Ղաթըլ Ղահրամանին հայերէն լիզուն սարւացրին։

## Բ.

Ղաթըլ Ղահրաման յըլնում էր ման էր գալում քաղաքի մէջ․ տեսնում էր, որ յիրանց աղդից Սեւ Սարի ճամբխի վրէն, սեւեր քաշած վըր գըլխին, նստած լալում են․ գնաց ըղոնց կուշտը, ասաց՝

— Ցընչի՞ էք լաց ըլնում։

Ասեցին՝ — Սկի։

Ասաց՝ — Սաղն (2) ասէք ընձի. թէ որ չէք ասում, ես իմ քեարքեաղանը կը խեծնեմ կէթամ։

Մէրը վերցրեց ասեց՝

— Ղաթըլ Ղահրաման, մեր իրեք տղէն գնացած են էս ճամբխով էլ չէկած։

Ասաց՝ — Քանի՞ տարի այ։

Ասաց՝ — Էս էրկու տարի։

Ցառւօտ յէլաւ Ղաթըլ Ղահրաման, քեարքեաղան խեծաւ, տւեց վըր էդ ճամբխին գնաց։ Շատը քիչ գնաց, Աստուած գինայ․ տեսաւ որ քարէ բուք այ էս սարի վրէն․ քեարքեաղանը էլ չը գնաց․ յինք քեարքեաղանը թողեց փիադայ (3) գնաց․ տւեց էդ սարը յէլաւ․ տեսաւ որ՝ մէ սէհրի չարխ այ բանում ըստեղ․ յիրան վերցրեց քցեց վըր էդ չարխին, չկարցաւ զաֆթէր չարխին․ չարխն ըտուր վե կալեց քցեց․ էկաւ յընկաւ ծովի ղրաղը, չօրերը բիրատի բըղեց, կաշիք յերեսից թեւերից պոկեց քցեց, յինքը մնածի պէս յընկաւ ըտեղ։ Էրազին էկաւ հրեշտակը, ասեց՝

— Ղաթըլ Ղահրամա՛ն, յառւօտ ըլնես քէշայ կը խազնես, կէթաս աջ կողմի դեխէն քեղի կը քցես վըր չարխին, չարխի միւը կը բանես քաշես, էնի կը կտրի․ որ կտրւաւ, արեւ կառնի։ Կիջնես կէթաս Մուղաղամ քաղաքը, իրեք խաս յուրի (4), յիրանք սէհրիբազ, քաղաք բիրատի դարձրած քար․ քո աղբրտիք, քո խօրօղբօր տղէրքը՝ ընդոց էլ այ դարձրած քար․ յիրանք ճամխի վրէն իրեք քուրով մէ օթաղի մէջ են։ Կը տափես (5) օթաղի ղրաղ ճարի (6) դէր․ որ գըլնեն

(1) Տղէտ։ — (2) Ճշմարիտ։ — (3) Ոտով։ — (4) Ցաւերժահարս։ — (5) Թագնուիս։ — (6) Դռան պատ։

դուս, կը բռնես, ընդոց վիզը կը կտրես, արունը կը թափես մըջ մէ փոս քարի․ որ իրեքն էլ մորթեցիր, էն արունը էն քարերին որ քսեցիր՝ կը սաղնան։

Ղաթըլ Ղահրամանը յէլաւ յառաւօտ, կանչեց Աստուած, քէչէն խադաւ, ուեց էդ սարի գլոխը, յէլաւ գնաց չարխի մօտը, յընցաւ աջ եանէ, կանչեց Աստուած, չարխի միլը բռնեց, չարխը քաշեց՝ կոտրաւ․ արեւն էլ յէլաւ, քամին էլ կըտրւաւ։ Ցիջաւ գնաց Մուղաղամ քաղաքը․ գնաց որ՝ բիրատի քար այ դարձած։ Ճամխի վրէն մէ օթաղի բուխէրկից մուխ այ յըլնում․ գնաց ընդու ճարի դէմը տափաւ․ տեսաւ որ՝ նեքսեւ խօսում են․ էն մէկն ասաւ՝

— Աղչի, յէլէք դուս, արեւն առերայ, տեսէք՝ էն անիրաւ Տաղմուրաղ Շահի ազգից էկան էլի չարխը կոտրի՞ն։

Մէ աղչիկը յէլաւ դուս․ Ղաթըլ Ղահրաման ձեռ քցեց ծամերից բռնեց, տարաւ գոխ (1) վրէն վիզը կտրեց։

Ասեց՝ — Աղչի, էն մէ աղչիկն գնաց չէկաւ, մէ դու յէլի տես։

Էն մէկն էլ յէլաւ, Ղաթըլ Ղահրաման ընդու էլ ծամերից բռնեց, ընդու էլ վիզը կտրեց, արունը էլի լցնեց մըջ էն գոխին։

Մնաց ջոջ քուրը․ յիրան յիրան ասաց՝

— Էս աղչիկներ էթում ին, ի՞նչ այ պատահում չեն գալում։

Ցինքն էլ յէլաւ դուս․ Ղաթըլ Ղահրաման ձեռ թալեց յիրան էլ բռնեց։

Ասաց՝ — Իգի՛թ, ընձի թող, ես քո աղբըրանք կը սաղցնեմ։

Ղաթըլ Ղահարման ասեց՝

— Ինչո՞վ կը սաղցնես։

Ասեց՝ — Էդ աղչկների արընով։

Ասեց՝ — Քո արունը քանց ընդոնցից լաւ դեղ այ։

Ըդու վիզն էլ կտրեց, արունը վե կալեց էդ քարերին քսեց․ վեր որ քսեց՝ Աստու հրամանով սաղացան, բիրատի էն Մուղաղամ քաղաքի մարդին սաղացրեց։ Վե կալեց յիր աղբըրտանքը, յիրա խօրօղբօր տղէրքը Աստու փառք տալով բերեց յիրանց քաղաքը։ Տեսան, ուրախացան։



(1) Գոււ՝ փոսացրած քար, որ առհասարակ դնում են ջրի տակ։

Մ ո ւ ր ա դ  Մ խ ի թ ա ր ե ա ն՝ Ապարանի Ջամըրլու գիւղի բնակիչ՝ 48 տարեկան միջակ հասակով, երկար մազերով տղամարդ է. չ'նայելով տարիքին, նիհար կազմուածքը, ներս ընկած աչքերն եւ փոսացած այտերն ծերունու տեսք են տալիս նորան։ Ձայնը մեղմ է, պատմելը դանդաղ. շատ անգամ շփոթւում է եւ դժւարանում բառերը միմեանց հետ կապել։ Բոլոր իւր գիտցած հեքեաթները նա սովորել է իւր հօրից, Մխիթարից, որ իւր ժամանակ գաղթած էր Ալաշկերտի Ցօնջալու հայաբնակ գիւղից։ Մխիթարը եղել է համբաւաւոր հեքեաթ ասող իւր հայրենիքում. որդին ինքն խոստովանում է, որ նորա գիտցածի միայն ամենափոքր մասն է յիշում։ Մուրադը (որպէս եւ նորա հայրն է եղել) հողագործ է արհեստով։

Բացի Բուրզէի եւ Ռուստամի զրոյցներից նա գիտէ նմանապէս Դաւթի եւ Մհերի «Նաղըլներն»։

## ՌԸՍՏԱՄԻ ԶԱԼ

Ռըստամի Զալը էղաւ տասնըհինգ տարեկան։ Մէկ ձի իրան համար պատրաստեց, իրան Թուր վրէն կապեց, գնաց աւղուչ էնելու։ Մէկ ջէյրան էկաւ ռաստ. ձին տւեց ջէյրանի յետեւը, յարեց ջէյրանը, էնքան լարեց, որ իրան հողից դուս էկաւ։ Արեւ մտաւ, ջէյրան վրէն հոլաւ. ձին քաշեց, քնաց մէկ ծառի տակը կապեց, նստաւ մինչեւ լուս։

Լուսն որ բացւաւ, տեսաւ որ մէկ քեոշք-ու-սարայ (1) կէրեւայ. ձին հեծաւ, քշեց գնաց քեոշք-ու-սարի դուռը կայնաւ. տեսաւ որ, դուռ փակած էր. մէկ մեծ խըֆիլ (2) մի կար զարկած դռան վրէն. Թուրը քաշեց տւեց խըֆիլին, խըֆիլը կըտրեց, դուռը բացեց, ձին քաշեց, ներս մտաւ։ Տեսաւ որ՝ մէկ խաս բախչէ (3) մի կայ քեոշքուսարի յառէջը. մէկ մարմար հաւուզ (4) կար էդ խաս բաղչի մէջ. ձին ծառը կապեց, գնաց հաւուզի վրէն լւացւաւ, իրան մէկ ճոթ (5) հաց կերաւ, խաբութ քաշեց վրէն, չինարի տակը քնաւ։

Մենք խաբար ո՞րտեղից տանք՝
Քեոշքուսարի միջէն տանք.

Քեոշքուսարի մէջը մէկ աղջիկ կար. աղջիկը գլուխ փանջարից (6) դուս քցեց, տեսաւ որ՝ մէկ ձիաւոր էկեր՝է բաղչի մէջը յիջեր է, ձինը ծառն է կապէ, յինքն էլ չինարի ծառի տակը քնէ։ Ձէն տւեց, ըսաւ՝

— Դու ո՞վ իս։

Ձէն չ'տւեց։ Ռըստամի Զալ յիմցաւ (7). աղջիկն ըսաւ՝

— Դու ի՞նչ մարդ ես։

— Ես Սասունցի իմ։

— Ցէլի հեծի քու ձին, ՝գնա՛։

— Ընչի՞ համար։

---

(1) Արքունիք։ — (2) Կողպէք։ — (3) Ճոխ պարտէզ (պարսկ.)։ — (4) Շատրւան։ — (5) Կտոր։ — (6) Լուսամուտ (պարսկ.)։ — (7) Արթնաւ։

— Ափսոս ես, տղա՛յ, գնա՛. էսի Կարմիր Դեւի քեռչքուսարէն է. միայ Կարմիր Դեւ կ՚գայ քու մեռնծ կտորը մէկ լէտր կչինէ:

Ըսաւ — Ա՛ղչի, մէկ ճոթ հաց տուր ընձի, նոր էղպէս բան ըսէ ընձի. էստեղ գալացողը Կարմիր Դեւից չի վախենայ:

Աղչիկը էնտեղից յիջաւ էկաւ տղի կուչտը, տղին վե կալեց տարաւ. գնացին նստան բալկոնը (1), աղչիկը տղին հաց բերեց: Հաց կերան պրծան, էնպէս էղաւ օր, աղչկայ սիրտը ինչպէս ճղես, աղէն մէջը դնես:

Ըսաւ — Տղա՛յ, քեզի ափսոս կիգամ (2). վե կաց գնա՛, Կարմիր Դեւ չ՚իգայ քեզի ըստեղ տեսնի:

Ըսաւ — Ա՛ղչի, քու անունն ի՞նչ է:

Ըսաւ — Իմ անունն Գիւլ-Փարի է (3):

Ըսաւ — Գիւլ-Փարի ջա՛ն, ըստեղ գալացող Կարմիր Դեւից չի վախենայ, արի՛ նստինք խօսանք:

Նստան թեւ թեւի թալին: Կարմիր Դեւը կայնաւ սարի գլուխը, դուրբին (4) դրեց աչիցը, տեսաւ օր՝ իրան դարգա՛յ (5) բաց էր, մի ձի կայ ուր (6) բաղչի մէջը, տղի մէկն էլ աղչկայ հետ բալկոնն էր նստուկ: Դեւը էնտեղ հերստաւ, գոռգոռալէն ճամբախ յընկաւ, էկաւ քեռչքուսարին մօտեցաւ: Ռըստամէ Զալ բալկոնից յիջաւ էկաւ իրան ձիու կուչտը, ձիան խոլնները պնդեց, ձին խեծաւ, Դեւի հետ կռիւ էրեց:

Էնքան կռւան օր արեւ մէր մտաւ. Դեւն ըսաւ՝ — Աղ՛բէր, բօ՛լ է (7):

Ռըստամի Զալ ձիուց յիջաւ, ձին տարաւ կապեց, էկան նստան, իրարու հետ հաց կերան, էն ջոկ օթախ գնաց քնաւ, էն ջոկ օթախ:

Մնաց մինչեւ յառաւօտ. յառաւօտ նստան յիրարու հետ հաց կերան: Դեւ հարցուց թէ՝

— Քու անունն ի՞նչ է:

— Ռըստամի Զալ է:

— Աշխրքի մէջ էսպէս ղոչաղ հողածին ես չեմ տեսէ: Ցէլի կռիւ էնինք:

Ցէլան կռիւ էրեցին. էնքան կռւան օր՝ օրը ճաշ դարձաւ. Դեւն ըսաւ՝

— Ա՛ղբէր, բաւական է, արի գիւլաշ կպնինք:

Էկան գիւլաշ կպան. շատ իրար տարան բերին. Ռըստամի Զալի հեւ.սը բռնեց, ղոլթուղ (8) քաշեց Դեւի ու տւեց գետին, Դեւի գլուխը կտրեց:

Աղչիկն էկաւ Զալի կուչտը, ըսաւ՝

---

(1) Պատշգամբ: — (2) Խղճալ: — (3) Գիւլ = մոյգ կարմիր. փարի կամ փէրի = յաւէրժահարս: — (4) Հեռադիտակ: — (5) Դուռ: — (6) Իւր: — (7) Բաւական է: — (8) Թեւի տակ:

— Տղա՛յ, յարի էրթանք դունեալըգի (1) մալն (2) ու խաղինէն էստեղ լցեր է. ուտինք, խմինք, քէֆ էնինք։

Ըստ. — Չէ՛, ա՛ղչի, քեզի պտի տանիմ։

Բերեցին Դեւի ձին, լաւ ավրանքներ բարձան, աղչկան Թարքը քաշեցին, էկաւ Սասուն։

---

Ներկայ հատուածս ներկայացնում է արեւելեան հեքեաթների ամենատարօրական միջադէպերից մէկն եւ ոչ մի նմանութիւն չունի իւր պարսիկ բնագրի հետ. Ռուստամի կռիւն «Սպիտակ» Դեւի հետ եւ Քէյ Քաոսի գերութիւնից ազատելն կազմում է «Արքայից Գրքի» ամենագեղեցիկ էջերից մէկն։ Հետաքրքիրն այն է, որ այստեղ Ռուստամ միանգամայն հայացել է, սերելով իրան Սասունից։

Բուրզէի գրոյցն, որ պատմեց նոյն Մուրադն, գրեթէ ոչնչով չի զանազանւում Բաբակ Ցարութիւնեանցի պատմածից. տարբերութիւնը միայն յատուկ անուններումն է. օրինակ՝ նոյն իսկ սկզբում՝

Աղջիկը պառկեցին Ռըստամի Զալի վրէն. մէկ տարի Թըմմաւ՝ չորս տղայ էղաւ.

Մեծ տղի անուն՝ Ֆախրէ Ֆահրամազ,
Ըստոր պստկի անուն՝ Շահ Թէքուր,
Ըստոր պստկի անուն՝ Ղորէ Նիղատ,
Ըստոր պստկի անուն՝ Բուրզէի։

---

(1) (Արաբ.) Աշխարհի. — (2) (Արաբ.) Ինչք։

# ՌՈՒՍՏԱՄ

Իբրև նմոյշ այստեղ առաջ եմ բերում Ռուստամի frdrkG վարի-անտներից մէկն, որ ինձ պատմել է եզիդի Փ ի ր (վարդապետ) Կ ա կ օ ն Սուրմալի գաւառի Ցարվանսարայ գիւղում։ Փիր Կակօն մօտ 70 տարե-կան ծերունի է, նրան սերում է «մարդարէի» ցեղից, գիտէ լաւ հայե-րէն, ինչպէս և նոյն գիւղի բոլոր եզիդիները։

## Ա·

Ռուստամ՝ Զալի տղէն այ,

Զալ՝ Դալի տղէն այ,

Ֆարամըրզ՝ Ռուստամի տղէն այ։

Մէ օր Զալ կանչեց Ռուստամին, ասեց՝ Թո՛ղ գայ· Ռուստամ էրէ-խայ էր, էկաւ· չ'ղիմիչաւ (1) տղին, ասեց՝ էս տղէն ջահէլ այ· յետ ղրկեց։

Մէ ժամանակ ընցաւ, էլի կանչեց·

Ռուստամ ասեց՝

— Ընչի՞ համար ընձի կանչում ես։

— Թեղի.չեմ ղիմիչէ ասեմ· հիմի քեաֆըր Ս ա լ մ ի ա ն Ս ը ն-դ ը ր էկեր այ քու վրէն կռիւ այ ուզում։

— Ես կէրթամ էնդու կռիւ· մէ դուրզ կչինես էրկաթից 40 լիտր։

Էնի գնաց չինեց բերեց· Ռուստամ փորձեց ասեց՝ Թեթեւ այ։

— Օր Թեթեւ այ, գնա՛ քու պապին դուրզ կայ չինած, էնի վե-կալ բե՛։

Գնաց բերեց ասեց՝ լաւ այ, էլի Թեթեւ այ։

Իրան հօր բերդին զարկեց, բերդը բլցրեց։

Զալ ասեց՝ էս ի՞նչ ձէն այ գալում· փա՛ռք Աստու, իմ տղէն էլաւ իր պապի տեղը բռնեց, հըլը (2) պապից էլ անցաւ։

Ռուստամ ասեց հօրը՝

— Ի՞նչ ես հիմի ուզում ինձնից։

— Իմ ուզածը՝ Աստուած քու հետը ըլնի· գնա՛ Սալմիան Սընդըր էկեր այ քու վրէն կռիւ այ ուզում։

Ռուստամ գնաց մէյդան, բարով տուեց, ասեց՝

— Ընչի՞ համար ընձի ուզում ես։

— Դու վո՞վ ես։

— Ես Ռուստամն եմ։

— Զալի տղէ՞ն ես։

— Հա՛ · ընչի՞ համար ընձի ուզում ես։

— Փադշահէչի աղչիկ կայ, օխտը տարի իմ սիրտ ուզում այ, ըն-ձի չի տանի· արի՛ էրթանք կռիւ, ես դու զօռով բերենք։

---

(1) Խղճայ։ — (2) Դեռ։

— Էթանք։

Ռուստամին ղրկեց առաջ՝ մէկ մէկ պտի կռիւ անեն։ Փարղահէչին էկաւ. էնի Ռուստամ մէ մէկի զարկին, չուր յէրկուն կուտան՝ մէ մէկին չը յաղթեց։ Ռուստամ կանայ ղաֆթ էնի (1), համա չի ղիմիչի. աղչիկն էլ չի ղիմիչի զարկի։ Մնաց մէկէլ օր. մէկէլ օր էլ չուր յէրկուն կուտան՝ մէ մէկին չը յաղթեց։ Վրայ իրեք օրն Ռուստամ զուրզ զարկեց աղչկայ բերդին, քանդեց. աղչկայ թեւ բռնեց քցեց յառաջը։

Աղչիկն ասեց՝ — Դու վո՞վ ես։

— Ես Ռուստամէ Զալն եմ։

— Ես գիտամ դու Ռուստամն ես, ընդուր համար ես քեզի չը ղըմրչայ զանեմ. ես քեզի հաւնում եմ, դու էլ հաւնո՞ւմ ես ընձի առնես։

Իրար հաւնեցին, էկան Սալմիանի կուշտ։ Ռուստամ բերեց տւեց Սալմիանին, ասեց՝

— Ա՛ռ քու ուզածը։

Աղչիկն ասեց՝ — Ես Ռուստամի համար էկեր եմ, քու երես չեմ տեսի. գնա՛, թէ չէ մէ զուրզ զարկեմ քեզի կսպանեմ։

Ռուստամ բերեց ուր տուն. հէրը ասեց տղին՝

— Սալմիան քեզի ընչի՞ կանչեց։

— Էս աղչկայ համար կանչեց։

— Աղչիկն օր բերիր, ընչի՞ չը տւիր։

— Աղչիկն նրան չէր հաւնում, ընձի էր հաւնում։

— Գնա՛ իմ աչքիցս կորի՛, դու իմ տղէն չես։

## Բ.

Սալմիան գնաց բազում զօչուն բերեց Զալի բերդի բոլորը բռնեց։ Սալմիանի հետը էկած էր եւ աղչկայ աղբէրը՝ Ղասըմը՝ մէ թեւ ունէր. ամէնից զօրէն Ղասըմն էր։ Օխտ տարի էդ զօչունը բռներ էր բոլորը։ Զալը կռւում էր, ընդու վրէն չէր կանայ։

Բէժանը՝ Ռուստամի քռոր տղէն էր. Զալը ղրկեց ընդուր Ռուստամին գանել։

Գնաց Ռուստամի բերդը. Ռուստամ ասեց՝

— Ընչի՞ համար էկեր ես։

— Քու տուն չաւրի, Սալմիան էնքան զօչուն բերեր այ, մեզի հալ չկայ (2). էս օխտ տարի այ մեզի չէնլիկ (3) չթողեցին։

— Ես չեմ գինայ։

Փարղահէչին ասեց՝

— Իմ աղբէր էկեր այ, շատ զօռբայ այ, հետ կռիւ չի լնի. յե՛լ գնա՛ կռիւ։

(1) Ցաղթել։ — (2) Ոյժ, կարողութիւն։ — (3) Ժողովուրդ։

